ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

7

ՀՈՒԼԻՍ

ԵՐԵՎԱՆ • 1977

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ՀՈՒԼԻՍ 1977

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


ՍՍՀՄ Գերագույն սովետի որոշումը ընկեր Լ. Ի. Բրեժնևին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընտրելու մասին . . . 2

ՍՍՀՄ իններորդ գումարման Գերագույն սովետի վեցերորդ նստաշրջանը

Ընկեր Մ. Ա. Սուսլովի ելույթը . . . . . . . . . . . . . . 3

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթը . . . . . . . . . . 5

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում, ՍՍՀՄ Մինիստրների սովետում

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի Ֆրանսիա կատարած այցի արդյունքների մասին . . . . . . . . . 6

*ԱՌԱՋՆՈՐԴՈՂ— Սովետական ժողովրդի Սահմանադրությունը . . . . 8*

ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 60-ԱՄՅԱԿԸ

*Մ. Պ. ՄԶԵԴԼՈՎ— Կոմունիստական աշխարհայացքը և նոր մարդու դաստիարակությունը . . . . . . . . . . . 14*

*Գ. Ա. ՀԱՅՐՅԱՆ— Կինոարվեստի ներգործուն ուժը . . . . . . . 24*

*Ռ. Ս. ՄԻՆԱՍՅԱՆՑ— Կատարելագործման ուղիով . . . . . . . 30*

*Շ. ՍԱՆԱԿՈԵՎ— Հեղափոխական-վերակերտիչ մեծ ուժը . . . . . 37*

ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ՍՍՀՄ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԻԾԸ

*Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ— Հասարակության և անհատի միասնությունը: Ա. Զ. ԹԱՌՈՅԱՆ— Իսկական դեմոկրատիա: Հ. Վ. ՀԱԿՈԲՅԱՆ— Խաղաղասիրության ոգով: Մ. Մ. ԴԱԼԼԱՔՅԱՆ— Հանուն մարդու առողջության . . 49*

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

*Կ. Ս. ԶՈՒՐԱԲՅԱՆ— Կոմունիստական և բանվորական շարժումը արդի փուլում 60*

ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՔԱՌՈՒՂԻՆԵՐՈՒՄ

*Զ. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ— Հայոց ռուսական կողմնորոշումը և արևմտաեվրոպական դիվանագիտությունը . . . . . . . . . . 68*

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

*Յ. Ծ. ՄԱՀՏԵՍՅԱՆ— Հասարակական արտադրության արդյունավետության հարցի շուրջ . . . . . . . . . . . . . 80*

*Լ. Զ. ԱՆԱՆՅԱՆ— Մրցույթները և խնայողությունը . . . . . . . 86*

ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

*Վ. Ա. ԳԻԼՈՅԱՆ— Ականավոր մարքսիստ պատմաբանը . . . . . . 92*




**ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎ**

## ՍՍՀՄ Գերագույն սովետի որոշումը

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻՆ ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ ԸՆՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԸ **ՈՐՈՇՈՒՄ Է.**

ԸՆԿԵՐ **ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԻՆ** ԸՆՏՐԵԼ ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ։

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի տեղակալ՝
Մ. ՆԻՅԱԶԲԵԿՈՎ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝
Մ. ԳԵՈՐԳԱՁԵ

*Մոսկվա, Կրեմլ, 16 հունիսի 1977 թ.։*







# ՍՍՀՄ ԻՆՆԵՐՈՐԴ ԳՈՒՄԱՐՄԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՎԵՑԵՐՈՐԴ ՆՍՏԱՇՐՋԱՆԸ

**Սովետական ժողովուրդը խորին գոհունակությամբ և ջերմ հավանությամբ ընդունեց ՍՍՀՄ իններորդ գումարման Գերագույն սովետի վեցերորդ նստաշրջանի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընտրելը։**

**Հունիսի 16-ին Միության սովետի և Ազգությունների սովետի համատեղ նիստում ելույթով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Մ. Ա. Սուսլովը։**

# ԸՆԿԵՐ Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎԻ ԵԼՈՒՅԹԸ

**Ընկեր դեպուտատնե՛ր։**

**Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և Գերագույն սովետի Միության սովետի ու Ազգությունների սովետի Ավագների խորհուրդները ձեր քննարկմանն են ներկայացնում առաջարկություն՝ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն սովետի նախագահության նախագահ ընտրելու մասին։** (Բուռն, երկարատև ծափահարություններ։ Բոլորը ոտքի են կանգնում)։

**Մայիսի 24-ին կայացած Կենտկոմի պլենումը լիակատար միահամուռությամբ նպատակահարմար համարեց, որ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Բրեժնևը միաժամանակ գրավի ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի պոստը։ Կենտկոմի պլենումում հանդես եկած ընկերները համակողմանիորեն հիմնավորեցին այդ որոշման ճշտությունը։**

**Մեր ամբողջ կուսակցությունը և սովետական ամբողջ ժողովուրդը Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին ճանաչում են որպես մեր կուսակցության, սովետական պետության, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ականավոր գործչի։**

**Կազմակերպչի, հեռատես քաղաքագետի, լենինյան տիպի գործչի իր հիանալի տաղանդը, իր ամբողջ կյանքը Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը նվիրաբերում է բանվոր դասակարգին, գյուղացիությանը, մտավորականությանն անձնվի-**

ռաքար ծառայելուն, ժողովրդի կյանքի բարելավման նկատմամբ մշտական հոգատարությանը, կոմունիզմի կառուցման մեծ գործին: Լեոնիդ Իլյիչը վայելում է մեր կուսակցության և սովետական ժողովրդի անսահման վստահությունն ու սերը: (Երկարատև ծափահարություններ):

Միջազգային լարվածության թուլացման, կայուն խաղաղության և սոցիալական առաջադիմության համար իր անխոնջ պայքարով Լեոնիդ Իլյիչը հռչակական հեղինակություն ու հարգանք է վաստակել աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց մեջ: Նա մեր կուսակցությունը, ամբողջ սովետական ժողովրդին, մեր մեծ սոցիալիստական պետությունը արժանի կերպով է ներկայացնում համաշխարհային ասպարեզում: Եվ հատկանշական է, որ ոչ միայն մեր երկրի, այլև միջազգային լարվածության թուլացման և խաղաղության գործի ամրապնդման համար կենսական նշանակություն ունեցող միջազգային փաստաթղթերի տակ դրված են Լ. Ի. Բրեժնևի ստորագրությունները: (Երկարատև ծափահարություններ):

Երկրի ամբողջ կյանքում, սովետական պետության ներքին և արտաքին քաղաքական գործունեության մեջ կոմունիստական կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերի աճը և Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի անձնական ակնառու հատկությունները ու հայրենիքի բարօրության համար նրա անձնվեր աշխատանքը, բնականաբար, հանգեցրին այն բանին, որ երկար տարիներ ընկեր Բրեժնևը փաստորեն թե՛ մեր ժողովրդի առաջ, թե՛ ամբողջ աշխարհի առաջ հանդես է գալիս որպես կոմունիստական կուսակցության և սովետական պետության ամենահեղինակավոր ներկայացուցիչը: (Երկարատև ծափահարություններ):

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի պոստում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ընտրումը համապատասխանում է սովետական հասարակության և պետության գերագույն շահերին և կնպաստի ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների կատարման նոր հաջողություններին, կոմունիզմի կառուցման նոր հաջողություններին: (Երկարատև ծափահարություններ):

Թույլ տվեք, ընկեր դեպուտատներ, ձեր քննարկմանը ներկայացնել ՍՍՀՄ Գերագույն սովետի որոշման հետևյալ նախագիծը:

«Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն սովետը ՈՐՈՇՈՒՄ Է.

Ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին ընտրել ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ»: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

***

Բուռն, երկարատև ծափահարությունների ներքո դեպուտատները միաձայն ընդունում են որոշում՝ ԸՆԿԵՐ ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԻՆ ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ ԸՆՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ:

Խոսքը տրվում է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԻՆ: Դահլիճում ներկա գտնվողները հոտնկայս, բուռն օվացիայով են ողջունում ընկեր Լ. Ի. Բրեժնևին:

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵԼՈՒՅԹԸ

Ընկեր դեպուտատնե՛ր:

Նախ և առաջ կկամենայի ձեզ՝ մեր պետության գերագույն մարմնում սովետական ժողովրդի ներկայացուցիչներին, խորին շնորհակալություն հայտնել ինձ ցույց տրված մեծ վստահության համար՝ ինձ երկրորդ անգամ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընտրելու համար: (Երկարատև ծափահարություններ):

Դրա հետ առնչված բարձր ու պատասխանատու պետական պարտականությունների կատարումը, մեր կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղարի պարտականությունների հետ մեկտեղ, անշուշտ, հեշտ գործ չէ: Բայց կուսակցության կամքը, սովետական ժողովրդի կամքը, մեր սոցիալիստական հայրենիքի շահերը ինձ համար միշտ եղել են ամենաբարձր օրենքը, որին ես ենթարկել եմ ու ենթարկում եմ իմ ամբողջ կյանքը: (Երկարատև ծափահարություններ):

Եվ հիմա, ընդունելով հայրենիքի այս նոր հանձնարարությունը, ուզում եմ ձեզ, թանկագին ընկերներ, հավաստիացնել, որ կաշխատեմ արժանի լինել ժողովրդի վստահությանը: (Երկարատև ծափահարություններ): Հավաստիացնում եմ ձեզ, որ իմ բոլոր ուժերը կնվիրաբերեմ հանուն այն մեծ նպատակների իրագործման, որ իրենց առջև դրել են կուսակցությունն ու ժողովուրդը դեպի կոմունիզմ տանող պատմական ճանապարհին: (Երկարատև ծափահարություններ): Ինձանից կախված ամեն բան կանեմ, որպեսզի մեր սիրելի երկիրն ամրանա ու բարգավաճի, որպեսզի սովետական մարդկանց կյանքն ավելի ու ավելի բարելավվի, որպեսզի ամրապնդվի աշխարհի խաղաղությունը և զարգանա ժողովուրդների համագործակցությունը: (Երկարատև ծափահարություններ):

Կրկին անգամ խորին շնորհակալություն, ընկերներ: (Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում):

## ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում, ՍՍՀՄ Մինիստրների սովետում

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՖՐԱՆՍԻԱ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, լսելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ինֆորմացիան Ֆրանսիա կատարած իր այցի և Ֆրանսիայի Հանրապետության պրեզիդենտ Վ. Ժիսկար դ՛ Էստենի հետ իր վարած բանակցությունների մասին, գոհունակություն են հայտնում այցի արդյունքների առթիվ և լրիվ հավանություն են տալիս ընկեր Լ. Ի. Բրեժնևի գործունեությանը:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի Ֆրանսիա կատարած այցը կարևոր ներդրում եղավ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների և խաղաղության ու միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության ու անկախության հետագա պայքարի՝ համագումարի նախատեսած ծրագրի իրականացման ասպարեզում:

1966 թվականին գեներալ դը Գոլի հետ սովետական ղեկավարների բանակցությունների շնորհիվ իրականացված շրջադարձի պահից Սովետական Միության և Ֆրանսիայի հարաբերությունները անշեղորեն զարգանում են կայուն և տևական հիմքի վրա: Պրեզիդենտ Վ. Ժիսկար դ՛ Էստենի հետ ընկեր Լ. Ի. Բրեժնևի բանակցությունների շնորհիվ երկու երկրների բարի համագործակցության գիծը լիակատար հաստատում և նոր արդյունավետ զարգացում ստացավ:

Ստորագրվեցին կարևոր քաղաքական փաստաթղթեր, ինչպես նաև մի շարք համաձայնագրեր, որոնց նպատակն է զարգացնել և խորացնել ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի համագործակցությունը քաղաքական, առևտրա-արդյունաբերական և գիտատեխնիկական բնագավառներում:



Ընկեր Լ. Ի. Բրեժնևի Ֆրանսիա կատարած այցը դուրս եկավ սովետա-ֆրանսիական հարաբերությունների շրջանակներից: Բանակցությունների ընթացքում քննարկվեցին արդի միջազգային կյանքի արմատական պրոբլեմները՝ խաղաղության ամրապնդումը և միջազգային լարվածության թուլացման խորացումը, պատերազմի վտանգավոր օջախների վերացումը, սպառազինությունների մրցավազքի դադարեցումը, միջուկային պատերազմի սպառնալիքի կանխումը:

Միջազգային լարվածության թուլացման մասին ընկ. Լ. Ի. Բրեժնևի և պրեզիդենտ Վ. Ժիսկար դ՛ Էստենի ստորագրած համատեղ հայտարարությունը վկայում է, որ երկու երկրները լի են վճռականությամբ՝ ընթանալու Հելսինկիի խորհրդակցության հարթած ուղիով, գործելու հոգուտ խաղաղության, անվտանգության, իրավահավասար համագործակցության:

Հաշվի առնելով, որ լարվածության թուլացումը զարգանում է բարդ իրադրության մեջ, որ աշխարհում դեռ գոյություն ունեն այնպիսի ազդեցիկ ուժեր, որոնք խոչընդոտում են լարվածության թուլացմանը, փորձում են խարխլել միայն, ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի քաղաքական կամքը՝ գործելու այնպես, որ միջազգային լարվածության թուլացումը դառնա կայուն և համապարփակ, հատկապես կարևոր սկզբունքային նշանակություն է ստանում:

Մեծ կարևորություն ունի միջուկային զենքը չտարածելու մասին սովետա-ֆրանսիական դեկլարացիան: Նրանում ընդգծվում է երկու երկրների հաստատ մտադրությունը հնարավոր ամեն բան անելու, որպեսզի կանխվի աշխարհով մեկ մասսայական ոչնչացման այդ զենքի հետագա տարածումը:

Երկու կողմերը արտահայտվեցին զինաթափման ուղղությամբ միջոցառումների իրականացման օգտին, զինաթափմանը նվիրված ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի հատուկ նստաշրջանի և զինաթափման համաշխարհային կոնֆերանսի արդյունավետ անցկացման օգտին:

Սովետա-ֆրանսիական ամենաբարձր մակարդակի բանակցությունները ցույց տվեցին երկու երկրների դիրքերի զուգադիպումը լայն շրջանակ ընդգրկող միջազգային պրոբլեմներում և ի հայտ բերեցին երկուստեք ձգտում՝ այսուհետև ևս ՍՍՀՄ-ի ու Ֆրանսիայի համագործակցությունը տարածելու նոր բնագավառների վրա:

Ռամբույեի հանդիպումից հետո ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի համագործակցությունը է՛լ ավելի մեծ կայունություն ձեռք բերեց և հասավ ավելի բարձր աստիճանի: Այդ զարգացումը լրիվ համապատասխանում է երկու երկրների ժողովուրդների շահերին, Եվրոպայի և ամբողջ աշխարհի խաղաղության ու անվտանգության շահերին:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի Ֆրանսիա կատարած այցը նոր էական ներդրում է սովետական և ֆրանսիական ժողովուրդների ավանդական բարեկամության ամրապնդման գործում, որը մեր երկրների հարաբերություններում ձեռք բերված դրական տեղաշարժերի ամրության կարևոր երաշխիքն է: Սովետական Միության և Ֆրանսիայի բարիդրացիական հարաբերությունների և բարեկամության զարգացումը ակտիվ աջակցություն և նպաստավոր արձագանք է գտնում երկու երկրների աշխատավորության ամենալայն խավերի կողմից:

Սովետական ժողովուրդը միահամուռ պաշտպանում է կուսակցության լենինյան արտաքին քաղաքականությունը և Ռամբույեում անցկացված սովետա-ֆրանսիական բանակցությունների արդյունքները դիտում է որպես միջազգային գործերում ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների մշակած կուրսի արգասավորության և արդյունավետության նոր հաստատում:

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ խոր գոհունակությամբ, հասարակական-քաղաքական ու աշխատանքային մեծ խանդավառությամբ ընդունեց ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության նախագծի մասին և հանրային քննարկմանը դրված այդ փաստաթուղթը։

Այս օրերին, երբ ամենուր երկրի աշխատավորությունը մեծ ոգևորությամբ քննարկում է ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը, մեր մեծ հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում տեղի ունեցավ ՍՍՀՄ Գերագույն սովետի հերթական նստաշրջանը, որը հրապարակեց պետական-քաղաքական խոշորագույն նշանակություն ունեցող որոշում՝ ընկեր Լ. Ի. Բրեժնևը ընտրվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ։ Իրավամբ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ընտրումը ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի բարձր ու պատասխանատու պոստում համապատասխանում է սովետական հասարակության և պետության գերագույն շահերին և կնպաստի ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների կատարմանը, մեր երկրում կոմունիզմի կառուցման մեծ գործին։

Քաղաքական այս նշանակալից ակցիան, որին հաջորդելու է մեր կյանքի հիմնական օրենքի ընդունումը, տեղի է ունենում մեծ Հոկտեմբերի 60-ամյակի հոբելյանական տարում։ Պատմական այս կարևորագույն փաստաթղթում արտացոլված են հեղափոխության հիմնական նվաճումները, նոր հասարակարգի կառուցման մեր անցած ուղին։ Նոր Սահմանադրության նախագծի քննարկումը սերտորեն առնչվում է այն վիթխարի խնդիրների իրականացման հետ, որոնք առաջադրել է հարազատ կուսակցության XXV համագումարը։ Ակներև է, որ հիմնական օրենքի քննարկումը մեծապես կնպաստի երկրի ամբողջ հասարակական կյանքի առավել ակտիվացմանը։ Սովետական մարդիկ, ջերմորեն հավանություն տալով Սահմանադրության նախագծին, իրենց պատրաստակամությունն են հայտնում կոմունիստական կուսակցությանն անմնացորդ նվիրաբերելու եռանդն ու կորովը մեծ Հոկտեմբերի, կոմունիզմի գաղափարների հաղթանակի համար, բարձր պահելու ՍՍՀՄ քաղաքացու վեհ կոչումը, պատվով կատարելու իրենց պարտքը՝ պետության և հասարակության հանդեպ։

Քաղաքական ակտիվությունը համակել է նաև մեր հանրապետության աշխատավորներին, որոնք հսկայական ուշադրությամբ և մեծ շահագրգռվածությամբ ուսումնասիրում են կուսակցության Կենտկոմի մայիսյան պլենումում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար, սահմանադրական հանձնաժողովի նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության նախագծի մասին» զեկուցումը, որն իրավամբ ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի վառ օրինակ է։ Հանրապետության աշխատավորներն ակտիվորեն քննարկում են նոր Սահմանադրության նախագիծը, միահամուռ հավանություն են տալիս ՍՄԿԿ



Կենտկոմի 1977 թ. մայիսյան պլենումի որոշումներին, վավերացվելիք հիմնական օրենքին։ Դրա պերճախոս վկայությունը հանդիսացան տեղական սովետների ընտրությունները, որոնք անցան քաղաքական ու աշխատանքային հզոր վերելքի պայմաններում։ Ընտրողների հետ դեպուտատության թեկնածուների հանդիպումները վերածվեցին կուսակցության և ժողովրդի անխախտ միասնության, ՍՄԿԿ, նրա Կենտկոմի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած քաղբյուրոյի շուրջը սովետական մարդկանց կուռ համախմբվածության, կուսակցության կուրսով աներեր ընթանալու նրանց վճռականության հուժկու ցույցի։ Ահա թե ինչու միանգամայն բնականոն է և օրինաչափ, որ սովետների երկրի նոր Սահմանադրությունը վերստին հռչակում է՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին։

Հունիսին տեղի ունեցած Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը քննարկեց «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության նախագիծը և ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի մայիսյան պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումից բխող՝ հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրները» հարցը։ Պլենումում զեկուցումով հանդես եկավ Հայաստանի Կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։ Ընդունված որոշման մեջ պլենումն ամբողջովին ու լիովին հավանություն տվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի մայիսյան պլենումի որոշումներին, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման բովանդակած դրույթներին ու հետևություններին և դրանք ընդունեց ի անշեղ ղեկավարություն և ի կատարումն։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը միահամուռ հավանություն տվեց ՍՍՀՄ Սահմանադրության նախագծին։

Միաժամանակ ՀԿԿ Կենտկոմի պլենումը կուսակցության քաղկոմներին, շրջկոմներին պարտավորեցրեց կազմակերպել ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի քննարկումը քաղաքային և շրջանային կուսակցական կազմակերպությունների պլենումներում, կուսակցական ակտիվի ժողովներում, սկզբնական կուսկազմակերպությունների դռնբաց ժողովներում և հասարակական բոլոր կազմակերպություններում, քաղաքի ու գյուղի բոլոր ձեռնարկություններում ու աշխատանքային կոլեկտիվներում։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ տրված է նոր Սահմանադրության անհրաժեշտության գիտական խոր հիմնավորումը, բացահայտված է նրա միջազգային նշանակությունը, առաջադրված են նախագծի համաժողովրդական քննարկման հետ առնչված խնդիրները։ Այստեղ արտացոլված են կոմունիստական կուսակցության և սովետական պետության տիտանական գործունեությունը, սովետական ժողովրդի ստեղծարար ու բազմաբովանդակ կյանքը վերջին քառասուն տարում, որոնց ընթացքում մեր հասարակության մեջ տեղի են ունեցել խոր փոփոխություններ։ «Մենք ստեղծել ենք նոր հասարակարգ, մի այնպիսի հասարակարգ, որի նմանը մարդկությունը դեռ չէր իմացել,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում։— Դա անճգնաժամ, մշտապես աճող էկոնոմիկայի, սոցիալիստական հասուն հարաբերությունների, իսկական ազատության հասարակարգ է։ Դա մի հասարակարգ է, որտեղ տիրապետում է գիտական մատերիալիստական աշխարհայացքը։ Դա մի հասարակարգ է, որն անսասանորեն վստահ է ապագայի, կոմունիստական լուսավոր հեռանկարներին։ Մեր առջև բաց են հետագա համակողմանի առաջադիմության անծայրածիր հեռաստանները»։ Նոր Սահմանադրության նախագծում արձանագրված է զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման իրողությունը։

Արդ, երբ սոցիալիզմը զարգանում է իր սեփական հիմքի վրա, առավել լրիվ բացահայտվում նոր հասարակարգի ստեղծարար ուժը, սոցիալիստական ապրելակերպի առանձնահատկությունները, ավելի բարենպաստ պայմաններ են ստեղծվում անհատի համակողմանի զարգացման համար։ Մեկ սերնդի կյանքի

ընթացքում վերջ տրվեց դարավոր հետամնացությանը, և մեր երկիրը հասավ տնտեսական ու գիտատեխնիկական զարգացման բարձր մակարդակի։ Երկրում կատարված վիթխարի փոփոխությունները անդրադարձել են հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։ Արմատապես փոխվել է երկրի էկոնոմիկան, ուր անբաժանելիորեն տիրապետում է սոցիալիստական սեփականությունը։ Հզորացել ու առնացել է ժողովրդատնտեսական միասնական օրգանիզմը, որը զարգանում է գիտատեխնիկական հեղափոխությունը սոցիալիստական կարգերի առավելությունների հետ զուգորդելով։

Հիրավի, փոխվել է մեր հասարակության սոցիալական դիմագիծը։ Այսօր բանվոր դասակարգը կազմում է երկրի բնակչության երկու երրորդը։ Ներկայիս բանվորը տեխնիկապես գրագետ, քաղաքականապես հասուն անհատ է, որի աշխատանքը դառնում է ավելի որակյալ, մոտենում ինժեներատեխնիկական անձնակազմի աշխատանքին։ Մեծապես աճել է բանվորների հասարակական ակտիվությունը, նրանց մասնակցությունը պետության կառավարմանը։ Վերափոխվել է նաև կոլտնտեսային գյուղացիությունը։ Ներկայիս գյուղացին ծնվել ու մեծացել է կոլտնտեսությունում, նրա հոգեբանությունը ձևավորվել է արդեն սոցիալիստական հիմքի վրա։ Գյուղատնտեսական արտադրության տեխնիկական հագեցվածությունը, գյուղի նոր ապրելակերպն ու կենցաղը շատ քիչ են տարբերվում քաղաքայինից։ Սոցիալիստական հասարակարգի սոցիալական կառուցվածքում մեծանում է մտավորականության տեսակարար կշիռը։ Այն պայմանավորված է ժողովրդի կուլտուրայի մակարդակի աճով, կոմունիստական շինարարության ասպարեզում գիտության դերի աննախընթաց վերելքով։

Մեզանում հաստատվել է ազգերի փաստական հավասարությունը։ Մեր բոլոր հանրապետությունները, այդ թվում նաև այն հանրապետությունները, որոնք նախկինում ետ էին մնում տնտեսական և կուլտուրական տեսակետից, այժմ հասել են զարգացման բարձր մակարդակի։ Միաժամանակ յուրաքանչյուր հանրապետության էկոնոմիկան դարձել է ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսի անխզելի մասը։

Մեր կյանքի հարաճուն զարգացումը խթանում է հասարակության սոցիալական միատարրության հաստատմանը։ Ավելի է ամրապնդվում բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության անխախտ դաշինքը։ Աստիճանաբար վերանում են սոցիալական հիմնական խմբերի միջև եղած տարբերությունները, ավելի ու ավելի են մերձենում մեր երկրի բոլոր ազգերն ու ազգությունները։ Առաջացել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը։ Նախագծում մասնավորապես շեշտված է, որ սովետական հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժը, նրա քաղաքական սիստեմի, բոլոր պետական ու հասարակական կազմակերպությունների միջուկը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է։ Զինված մարքսիստական-լենինյան ուսմունքով, կուսակցությունը սահմանում է հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը, ՍՍՀՄ ներքին ու արտաքին քաղաքականության գիծը, ղեկավարում է սովետական ժողովրդի մեծ, ստեղծարար գործունեությունը, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ է տալիս կոմունիզմի հաղթանակի համար նրա պայքարին։

Մեր երկրի տնտեսական սիստեմի հիմքը արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունն է, որը ներառում է պետական (համաժողովրդական) սեփականությունը, կոլտնտեսությունների և այլ կոոպերատիվ կազմակերպությունների սեփականությունը (կոլտնտեսային-կոոպերատիվ), արհմիութենական և այլ հասարակական կազմակերպությունների սեփականությունը։ Ազատ աշխատանքը,— նշված է նախագծում,— հանրային հարստության աճի, ժողովրդի և յուրաքանչյուր սովետական մարդու բարեկեցության աղբյուրն է։

Ի տարբերություն կապիտալիստական արտադրության, որի գլխավոր նպատակը կապիտալիստի շահույթն է, սոցիալիզմի օրոք հանրային արտա-



դրության գերագույն նպատակը մարդկանց նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների լրիվ բավարարումն է։ Մեր պետությունը հենվում է աշխատավորների ստեղծագործական ակտիվության, սոցիալիստական մրցության, գիտատեխնիկական պրոգրեսի նվաճումների վրա, ապահովում արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումը, ժողովրդական տնտեսության դինամիկ և համամասնական զարգացումը։ Ակտիվորեն օգտագործվում են տնտեսական հաշվարկը, շահույթը, ինքնարժեքը։

Նոր Սահմանադրության նախագծում շարադրված են նոր դրույթներ. «Սոցիալական զարգացումը և կուլտուրան» խորագիրը կրող գլխում մասնավորապես շեշտված է, որ պետությունը նպաստում է հասարակության սոցիալական միատարրության ուժեղացմանը, անհատի ներդաշնակ զարգացման համար պայմանների ստեղծմանը, ժողովրդական կրթության, առողջապահության, գիտության և կուլտուրայի զարգացմանը, աշխատանքի կենցաղի պայմանների բարելավմանը։ Այն, աշխատանքի արտադրողականության աճին համապատասխան, անշեղ իրագործում է աշխատավորների աշխատավարձի մակարդակը, նրանց ռեալ եկամուտները բարձրացնելու կուրսը։ Հատուկ բաժին է նվիրված արտաքին քաղաքականությանը, որտեղ ասված է. սովետական պետությունը հետևողականորեն վարում է լենինյան խաղաղասիրական քաղաքականություն, հանդես է գալիս ժողովուրդների անվտանգության ամրապնդման և լայն միջազգային համագործակցության օգտին։ Նախագծի «Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը» գլխում շեշտված է, որ պետությունն ապահովում է սովետական ժողովրդի սոցիալիստական նվաճումները, խաղաղ աշխատանքի, ՍՍՀՄ սուվերենության ու տերիտորիալ ամբողջականության պաշտպանումը. այդ նպատակով ստեղծված են զինված ուժեր և սահմանված է ընդհանուր զինվորական պարտականություն։

Նախագծի նոր դրույթների լեյտմոտիվը սոցիալիստական դեմոկրատիայի ընդլայնումն ու խորացումն է։ Նոր հիմնական օրենքում հետագա զարգացում են ստանում սովետների ձևավորման և գործունեության դեմոկրատական սկզբունքները, նախատեսված են նրանց դերի ուժեղացումը հասարակության կյանքի կարևորագույն հարցերի լուծման գործում, ինչպես նաև սովետների, նրանց դեպուտատների կապերի ամրապնդման գլխավոր ուղիները։ Այս առումով որոշակի դրական գործ է արվել ինչպես ամբողջ երկրում, այնպես և մեր հանրապետությունում— ընտրողների հետ դեպուտատների հանդիպման միասնական օր սահմանելը, դեպուտատական հանձնաժողովների նկատելի աշխուժացումը, աշխատավորների առաջարկությունների առավել գործարար, կոնկրետ քննարկումը։

Նախագծում լայնորեն արտացոլված է այն կարևոր դերը, որ երկրի կյանքում խաղում են արհմիությունները, կոմերիտմիությունը, կոոպերատիվ և մյուս մասսայական, հասարակական կազմակերպությունները։ Հատկապես նշված է աշխատավորների կոլեկտիվների դերը, որը նոր քայլ է արտադրության կառավարման գործում դեմոկրատական սկզբունքները զարգացնելու կուսակցության գծի իրականացման նպատակով։ «Աշխատավորների կոլեկտիվները, հասարակական կազմակերպությունները,— ասվում է Սահմանադրության նախագծի 16-րդ հոդվածում,— մասնակցում են ձեռնարկությունների և միավորումների կառավարմանը, աշխատանքի և կենցաղի կազմակերպման հարցերի, արտադրության զարգացման, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական կարիքների և նյութական խրախուսման համար նախատեսված միջոցների օգտագործման հարցերի լուծմանը»։

Նոր Սահմանադրության նախագծում նշված է, որ ՍՍՀՄ-ում ստեղծված է զարգացած սոցիալիստական հասարակարգ։ Սովետական համաժողովրդական պետությունը արտահայտում է երկրի բանվոր դասակարգի, գյուղացիության ու մտավորականության, բոլոր ազգերի և ազգությունների կամքն ու դաշինքը։

Զարգացած սոցիալիզմի կառուցումը հնարավորություն է ընձեռում զգալիորեն կատարելագործել հիմնական օրենքում սովետական քաղաքացիների իրավունքների վերաբերյալ հոդվածները։ «Յուրաքանչյուրի ազատ զարգացու-

մը բոլորի ազատ զարգացման պայմանն է»՝ «Կոմունիստական մանիֆեստի» այս նշանավոր խոսքերը փաստորեն դարձել են մեր պետության արմատական սկզբունքը, որը վավերագրված է նախագծում։ Նոր Սահմանադրությամբ հռչակվող քաղաքացիների իրավունքներն ու ազատություններն իրենցից ներկայացնում են ոչ միայն կոմունիստական գաղափարախոսության խորապես հումանիստական բնույթի վառ վկայությունը, այլև հանդիսանում են հասուն սոցիալիզմի ստեղծած այն սոցիալ-տնտեսական հիմքերի օրենսդրական արտացոլումը, որոնք նյութապես երաշխավորում են մեր հասարակության անդամների այդ իրավունքներն ու ազատությունները։

Սովետական քաղաքացիների իրավունքների գլխավոր երաշխիքը, ի վերջո, հայրենիքի հզորությունն ու բարգավաճումն է։ Յուրաքանչյուր սովետական մարդու քաղաքացիական պարտքն է՝ խորապես գիտակցել իր պատասխանատվությունը հասարակության հանդեպ, բարեխղճորեն կատարել իր պարտքը պետության, ժողովրդի հանդեպ։ Երկրի նյութական և հոգևոր հարստությունները բազմապատկվում են սովետական մարդկանց համատեղ ջանքերով, մեր ընդհանուր գործին բերած բոլորի և ամեն մեկի անձնական ավանդով։ Նոր Սահմանադրության Նախագծում զարգացվել և ընդլայնվել են մարդկանց կյանքի բուն հիմքերը շոշափող սոցիալ-տնտեսական կոնկրետ իրավունքներին վերաբերող հոդվածները։

«Նախագծում ամբողջությամբ վերցրած,—նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում,— ազգային-պետական կառուցվածքի հարցերի լուծումը ապահովում է բազմազգ Միության ընդհանուր շահերի և այն կազմող հանրապետություններից յուրաքանչյուրի շահերի իրոք դեմոկրատական զուգակցումը, ապահովում է մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների համակողմանի ծաղկումը և անշեղ մերձեցումը»։

ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը կոմունիստական կուսակցության և սովետական պետության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության, մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների ինտերնացիոնալ միասնության օրենսդրական արտահայտությունն է։

Միայն մեծ Հոկտեմբերի, լենինյան գաղափարների հաղթանակի շնորհիվ հայ ժողովուրդը ձեռք բերեց իր սոցիալական և ազգային ազատագրումը, իր սոցիալիստական պետականությունը, դրսևորեց իր տաղանդներն ու ձիրքերը, հայրենի հողը վերածեց ծաղկուն երկրամասի, հասավ ժամանակակից առաջադիմության բարձրունքներին։

Որոշ փոփոխություններ են մտցված նաև ընտրական սիստեմում։ Համաձայն գործող Սահմանադրության, ՍՍՀՄ Գերագույն սովետում ընտրվում էին 23, իսկ միութենական հանրապետությունների գերագույն սովետներում՝ 21 տարեկան դարձած անձինք։ Նոր հիմնական օրենքի նախագիծը նախատեսում է այդ իրավունքը տալ 18 տարեկանի հասած սովետական բոլոր քաղաքացիներին։ Այս նորամուծությունը երիտասարդ սերնդի նկատմամբ հասարակության հոգատարության, երիտասարդության հանդեպ վստահության ռեալ ապացույց է։

Նախագծում պատշաճ արտահայտություն են գտել սոցիալիստական օրինականության և իրավակարգի հետագա ամրապնդման հոդվածները։ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը նշեց, որ ՍՍՀՄ նոր Սահմանադրության հոդվածների կենսագործումը պետք է որակական նոր մակարդակի բարձրացնի մեր ամբողջ պետական ու տնտեսական գործունեությունը, իշխանության և կառավարման մարմինների ողջ աշխատանքը։

ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունումը ոչ միայն նշանակալից է մեր երկրի համար, այլև հսկայական միջազգային նշանակություն ունեցող իրադարձություն է։ Նրա կենսագործումը տևական խոր ազդեցություն կունենա մեր հայրենիքի սահմաններից շա՜տ հեռու։ Այդ է վկայում և այն իրողությունը, որ նոր Սահմանադրության նախագիծը, ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի տված զեկուցումը գտնվում են համաշխարհային հասարակայնության ուշադրության կենտրոնում։ Մեր նոր Սահմանադրությունն



ամբողջ աշխարհին ակնբախորեն ցույց է տալիս, թե ինչպես է զարգանում սոցիալիստական պետությունը՝ առավել ամուր և խորը հաստատելով սոցիալիստական դեմոկրատիան, դրսևորելով նրա էությունը։ Մեր Սահմանադրությունը համոզիչ կերպով ցույց է տալիս պետության ու հասարակության գործերի կառավարմանը ժողովրդական լայն զանգվածների հարաճուն ռեալ մասնակցության բազմազան ձևերն ու հուժկու թափը։ Իրողություն, որ չգիտեն բուրժուական երկրները, որտեղ ըստ էության կառավարում է միայն կապիտալիստների փոքրաթիվ դասակարգը։

Ծանոթանալով մեր նոր Սահմանադրության նախագծի դրույթներին, մարդիկ պարզորոշ տեսնում են, թե որքան լայն ու բազմազան են սոցիալիստական հասարակության քաղաքացիների իրավունքներն ու ազատությունները։ Նրանց առջև ողջ հասակով կհառնի մեր պետությունը, որն իր նպատակը համարում է ամբողջ ժողովրդի, առանց բացառության նրա բոլոր դասակարգերի ու խմբերի բարեկեցության ու կուլտուրայի անընդհատ աճը և ակտիվորեն աշխատում է հասնել այդ նպատակին։ Հաղթանակած սոցիալիզմի առաջին պետությունն իր դրոշակի վրա առհավետ դրոշմել է «Խաղաղություն» բառը՝ որպես իր արտաքին քաղաքականության բարձրագույն սկզբունք, որը արտահայտում է սեփական ժողովրդի և մոլորակի մյուս բոլոր ժողովուրդների իղձերը։

Սահմանադրության մեջ արտացոլված են հաղթանակած սոցիալիզմի նվաճումները, որոնք ոգեշունչ օրինակ են սոցիալիստական զարգացման ուղին ընտրած ժողովուրդների համար։ Այն հուսալի պատվար է կապիտալի երկրների աշխատավոր զանգվածների՝ իրենց իրավունքների, կապիտալիստական շահագործման ճնշումից ազատագրվելու պայքարում։

Դեմոկրատիայի հասկացությունների և մարդու իրավունքների՝ բուրժուական ու ռևիզիոնիստական խեղաթյուրված և ռեհկացված մեկնաբանությանը մենք հակադրում ենք սոցիալիստական հասարակության քաղաքացիների իրավունքների ու պարտականությունների ամենալիակատար և ռեալ համակարգը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմն առաջարկել է հանրապետության Գերագույն սովետի նախագահությանը նախապատրաստել ՍՍՀՄ նոր Սահմանադրությանը համապատասխան Հայկական ՍՍՀ հիմնական օրենքի նախագիծը։ Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրությունը պետք է արտացոլի մեր ժողովրդի, հանրապետության բոլոր աշխատավորների տնտեսական, հասարակական-քաղաքական, կուլտուրական խոշոր նվաճումները, որ տեղի են ունեցել մեր հանրապետության կյանքում վերջին տասնամյակներում։ Հանրապետության նոր Սահմանադրությունը կարևոր ուղենիշ կհանդիսանա մեր ժողովրդի սոցիալիստական պետականության զարգացման գործում, վառ կերպով կվկայի նրա նվիրվածությունը լենինյան մեծ գաղափարներին, կարտահայտի միակ ճիշտ ուղիով՝ սոցիալիզմի և կոմունիզմի ուղիով ընթանալու նրա անհողդողդ կամքը։

Շիրավի, մեր կյանքի հիմնական օրենքի նախագծի քննարկումը ստեղծագործական լիցք է հաղորդել աշխատավորական զանգվածներին, ջերմ արձագանք գտել միլիոնների սրտերում, դարձել ոգեշնչող զորեղ ուժ, որը սովետական ժողովրդին մոբիլիզացնում է կենսագործելու ՍՄԿԿ XXV համագումարի կանխագծումները, հաջողությամբ կատարելու մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։




# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԸ ԵՎ ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. Պ. ՄՋԵԴԼՈՎ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿՐԹՈՒԹՅԱՆ էությունը վառ կերպով արտահայտվում է այն բանում, որ ինքը՝ հասարակությունը, ձգտում է յուրաքանչյուր անհատին դարձնել սոցիալական առաջընթացի ակտիվ ու ստեղծագործ մասնակից: Հենց այդ պատճառով էլ հասարակությունը մեծ ուշադրություն է հատկացնում իր անդամներին գաղափարական համոզվածության, սոցիալիստական հասարակական, բարոյական ու գեղագիտական իդեալներով դաստիարակելու խնդիրներին, նրանց գիտական մտահորիզոնը ընդլայնելու և խորացնելու պրոբլեմներին: ՍՄԿԿ-ի համագումարներում, Կենտկոմի պլենումներում, գաղափարական աշխատանքի հարցերին նվիրված կուսակցական փաստաթղթերում հետևողականորեն շեշտվում է սովետական մարդկանց շրջանում գիտական, կոմունիստական աշխարհայացքի, աշխատանքի, սոցիալական պարտականությունների նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, քաղաքական բարձր գիտակցականության ձևավորման կարևորությունը:

Հենվելով լենինյան այն գաղափարի վրա, որ հասարակությունը, պետությունն ուժեղ են հենց մասսաների գիտակցականությամբ, մեր կուսակցությունը «...իր մշտական հոգսն է համարում,— ինչպես նշվել է ՍՄԿԿ XXV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— կոմունիստական գիտակցականության, կոմունիզմ կառուցելու պատրաստակամության, կամքի ու հմտության դաստիարակումը»:

Կոմունիստական աշխարհայացքի էության ճիշտ ըմբռնումը, լայն մասսաների շրջանում դրա ձևավորման անհրաժեշտ պայմանների ստեղծումը, բնակչության հասակային, պրոֆեսիոնալ տարբեր խմբերում աշխարհայացքի մշակման առանձնահատկությունների հաշվառումը, պրոպագանդման կոնկրետությունը, սիստեմատիկությունն ու նպատակասլացությունը գաղափարադաստիարակչական աշխատանքի ներգործունության գրավականն են: Մեր կուսակցությունը մշտապես դրան է նպատակամղում գիտնականների, պրոպագանդիստների, դաստիարակչական աշխատանքի կազմակերպիչների ջան-



քերը: Դաստիարակչական աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու նոր, հզոր խթան հանդիսացավ դաստիարակության ողջ գործի դրվածքի նկատմամբ կոմպլեքսային մոտեցման գաղափարի առաջադրումն ու համակողմանի հիմնավորումը կուսակցության XXV համագումարում, այսինքն՝ գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնության ապահովումը՝ բնակչության տարբեր խմբերի առանձնահատկությունների հաշվառումով:

Մասսաների կողմից դիալեկտիկա-մատերիալիստական աշխարհայացքի տիրապետման պրոցեսի բարդությունը կապված է մի շարք օբյեկտիվ պայմանների, սուբյեկտիվ գործոնների կոմպլեքսային ապահովման անհրաժեշտության հետ: Դրանք են՝ արմատական հասարակական վերափոխումները երկրում, մարդկանց կյանքի նյութական պայմանների բարելավումը, նրանց հաղորդակցումը գիտակցական հասարակական գործունեությանը, գիտական գիտելիքներին, կուլտուրական արժեքներին, հետևողական, նպատակասլաց գաղափարադաստիարակչական աշխատանքը, սոցիալիզմի սկզբունքներին խորթ անիրական, ոչ գիտական պատկերացումների, հայացքների ու բարքերի հետևողական հաղթահարումը, անզիջում, սիստեմատիկ պայքարը բուրժուական աշխարհայացքի դեմ:

Սովետական հասարակարգի զարգացման ներկա՝ հասուն սոցիալիզմի փուլը նյութական, հասարակական-քաղաքական, հոգևոր, բարոյական նպաստավոր նախադրյալներ է ստեղծում, որպեսզի ժողովրդական զանգվածները յուրացնեն իրականության զանազան երևույթների նկատմամբ գիտական մոտեցման հմտություններ, ըմբռնեն սոցիալական կեցության խորքային պրոբլեմները, մեր ողջ ժողովրդի ստեղծարար գործունեության իմաստը: Զարգացած սոցիալիստական հասարակարգի անդամների համար, որպես կանոն, բնորոշ է կուլտուրայի, կրթության բարձր մակարդակը. բնակչության բացարձակ մեծամասնությունը զերծ է պատրանքային, հակագիտական, կրոնական աշխարհայացքի ներգործությունից, որը կաշկանդում է այն կրողների սոցիալական ակտիվությունը և խոչընդոտում աշխատավոր անհատի կուլտուրական, բարոյական զարգացմանը: Գիտատեխնիկական, հոգևոր, սոցիալական առաջընթացի նոր իրադրությունը, էականորեն ներգործելով մարդկանց կյանքի, կենցաղի, մտայնության, հասարակական վարքագծի վրա, հնարավորություն է ընձեռում նրանց ընդլայնելու իրենց մտահորիզոնը, հաղթահարելու առօրեական գիտակցության սահմանափակությունը, օգնում է կուսակցության դաստիարակչական աշխատանքին:

Կուսակցությունը մասսաների գաղափարաքաղաքական դաստիարակության բնագավառում ծավալած իր մեծ աշխատանքում միշտ հաշվի է առնում ինչպես կոմունիստական դաստիարակությանը նպաստող բոլոր օբյեկտիվ պայմանների կատարելագործման անհրաժեշտությունը, այնպես էլ այն, որ վերջին հաշվով մեր առաջընթաց շարժման կարևորագույն նախադրյալը հենց աշխատավորների գաղափարական համոզվածության, քաղաքական գիտակցականության աճն է: ՍՄԿԿ XXV համագումարում, կուսակցության Կենտկոմի որոշումներում մշակվել ու հետևողականորեն կենսագործվում է ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարձրացման, սոցիալական ապահովության, առողջապահության բարելավման, միջնակարգ ու բարձրագույն կրթության կատարելագործման, աշխատավորների բարոյա-քաղաքական դաստիարակության, նրանց հասարակական նախաձեռնության, քաղաքացիական պատասխանատվության, գիտակցական կարգապահության, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի զարգացման լայն ծրագիրը: Այժմ աշխատավոր անհատի հանրակրթական և կուլտուրական մակարդակի, պրոֆեսիոնալ պատրաստության բարձրացումը, նրա համակողմանի զարգացումը, լինելով գիտական կոմունիզմի ծրագրային խնդիրը, միաժամանակ մեր հետագա զարգացման կենսական սոցիալական պահանջմունքն է, անհրաժեշտ պայմանը: Հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների գոյակցության, դրանց չթուլացող գաղափարական հակամարտության՝ մարդկանց մտքերի ու

կհանգի գյուղատնտեսը, յուրատեսակ՝ անտառագետը և այլն» (հ. 32, էջ 167): Հասկանալի է, որ խոսքը վերաբերում է կոմունիստական աշխարհայացքին հաղորդակից դառնալու տարբեր ուղիներին միայն, իսկ նրա սկզբունքները միասնական են ու համընդհանուր. դրանք գիտականորեն-սիստեմավորված ձևով արտացոլելով իրականության առավել ընդհանուր օրենքները, օգնում են յուրաքանչյուր աշխատավորի՝ իր համար պարզելու պատմական հորիզոնները, հեռանկարները, գիտակցորեն որոշելու իր տեղը սոցիալիստական, կոմունիստական շինարարության մեջ, դառնալու պատմական պրոցեսի նպատակամետ ու ակտիվ մասնակիցը, կանխատեսելու իր ճանաչողական ու ստեղծարար գործունեության օբյեկտիվ հետևանքները, պարզելու պատմական հեռանկարները:

Կոմունիստական աշխարհայացքը չի սահմանափակվում միայն գրքային գիտելիքների մի հասարակ գումարով, որ կարելի է անգիր անել ու օգտագործել դեպքից դեպք: Չի կարելի նաև լայն զանգվածներին մարքս-լենինյան աշխարհայացքին հաղորդակից դարձնել գաղափարա-դաստիարակչական, լուսավորչական աշխատանքի միջոցներով միայն: Մարքս-լենինյան աշխարհայացքի համոզված հետևորդները ձևավորվում են աշխատանքում, սոցիալական ակտիվ գործունեության մեջ, կոմունիզմի գործի համար մղվող պայքարում, որոնցից դուրս գրքային գիտելիքները կարող են դառնալ մեռած դոգմաներ: Խիստ քննադատելով «տիրացուներին ու գրքի մարդկանց», որոնք իրականում կոմունիզմի համար գործելու իրենց անկարողությունն ու չկամությունը քողարկում են լոզունգներով, ցիտատներով, Վ. Ի. Լենինը, մեր կուսակցությունը բացահայտեցին մարդկանց դաստիարակության հսկայական հնարավորություններ, որոնք թաքնված են հասարակության բարօրության համար կատարվող աշխատանքում, քաղաքական պրակտիկայում, պետական և հասարակական գործունեության մեջ, սոցիալական կյանքի բոլոր բնագավառներում դեմոկրատական հիմունքների զարգացման մեջ:

Դիալեկտիկա-մատերիալիստական այն դրույթը, ըստ որի ակտիվ մասնակցությունը նոր հասարակարգի կառուցմանը օգնում է անհատին՝ համոզվելու ուսուցման պրոցեսում ձեռք բերած գիտելիքների ճշտության, արդարացիության մեջ, խոր և գիտակցորեն հասկանալու սոցիալական հարաբերությունների էությունը, դրսևորելու և զարգացնելու ինչպես պրոֆեսիոնալ գիտելիքներն ու հմտությունները, այնպես էլ բոլոր մտավոր, բարոյական, կուլտուրական ու քաղաքական հատկությունները, միաժամանակ բացահայտում է աշխատանքային և հասարակական գործունեության, ինչպես նաև աշխատանքային պրոցեսի ճիշտ, խելացի կազմակերպման համար լավագույն կոմպլեքսային պայմաններ ստեղծելու ողջ կարևորությունը: Ուստի, սոցիալ-տնտեսական խնդիրների իրականացմամբ է պայմանավորվում նաև դաստիարակչական, աշխարհայացքային պրոբլեմների լուծումը: Կարևորագույն սոցիալական, այդ թվում և գաղափարական պրոբլեմ է անխոնջ հոգատարությունը՝ ամեն մի միկրոմիջավայրում, յուրաքանչյուր ձեռնարկությունում ստեղծելու այնպիսի պայմաններ, որ աշխատավորները սեփական փորձով, պրակտիկ գործունեությամբ համոզվեն կոմունիստական աշխարհայացքի ճշտության, վերջինից բխող բարոյա-հասարակական դրույթները պրակտիկայում իրագործելու կենսական անհրաժեշտության մեջ: Հենց դրանով էլ կոմունիստական աշխարհայացքի սկզբունքները դառնում են ներքին խոր համոզմունքներ, անհատի վարքագիծը բնորոշող գործոն: Իսկ դառնալով անհատի գաղափարատեսական կողմնորոշիչը, մարքս-լենինյան աշխարհայացքը ներգործում է անհատի սոցիալական կապերի մեջ բազմազանության, շրջապատի աշխարհի, սեփական վարքագծի ու արարքների, մտածողության բնույթի, էմոցիաների ուղղվածության նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքի վրա:

Ժողովրդական տնտեսության զարգացումը հրամայաբար պահանջում է, ինչպես նշվում է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում, կուսակցության մյուս փաստաթղթերում, ամեն կերպ ամրապնդել աշխատանքային կարգապահությունը, արմատախիլ անել ամեն տեսակ թափթփվածություն, անկազմակերպվածություն, պահանջում է ըմբռնել խնայողության, ժողովրդական մի-



ջոցների, հումքի, նյութերի խնայողաբար օգտագործման համար, յուրաքանչյուր աշխատավորի, ձեռնարկության, տնտեսության յուրաքանչյուր ճյուղի աշխատանքի արդյունավետության համար մղվող համաժողովրդական պայքարի կենսական անհրաժեշտությունը: Իրականացվող սոցիալ-տնտեսական շինարարության հաջողությունը մեծապես պայմանավորված է յուրաքանչյուրի պատասխանատվությամբ, գիտակցականությամբ, նախաձեռնությամբ, կարգապահությամբ, հասարակական պարտքի գիտակցմամբ: Իր հերթին, սոցիալ-տնտեսական շինարարությունը, նրա գիտական հիմնավորվածության բարձր աստիճանը և դրա իրագործմանը համաժողովրդական մասնակցության կազմակերպումը պայմաններ են ստեղծում կոմունիստական աշխարհայացքի հետագա հաստատման համար:

ՍՄԿԿ XXV համագումարը հատուկ ուշադրություն դարձրեց բարոյական, աշխատանքային և քաղաքական դաստիարակության միասնության, հասուն սոցիալիզմի պայմաններում անձնականի և հասարակականի օրգանական միասնության, անհատի ակտիվության, նրա կարգապահության և պատասխանատվության ըստ ամենայնի զարգացման պրոբլեմին: Անհատի ամբողջականությունը, բարոյական կատարելությունը, բարձր պահանջկոտությունը, որ մարդիկ պետք է ներկայացնեն միմյանց և որով յուրաքանչյուրը պետք է դիմի ինքն իրեն, կուսակցությունն առաջադրում է որպես սոցիալական, հոգևոր գլխավոր արժույթներից մեկը: «Ոչ մի բան այնպես չի վեհացնում անհատին,— նշված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— ինչպես ակտիվ դիրքը կյանքում, գիտակցական վերաբերմունքը հասարակական պարտքի նկատմամբ, երբ խոսքի և գործի միասնությունը դառնում է վարքագծի ամենօրյա նորմ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 116):

Եվ իրոք, անհատի, կոլեկտիվների, դասակարգերի բարոյական պարտքը, գործունեության բարոյական մղումը կարող են լիակատար զարգանալ հասարակական գործունեության հասունացած խնդիրների ու նպատակների պատմական անհրաժեշտության գիտակցման դեպքում միայն: Որքան մարդն ավելի խոր է հասկանում, թե ինչի պետք է ձգտի ինքը, ինչպիսի խնդիրներ ու նպատակներ է նրա առջև դնում հասարակական զարգացման ներկա փուլը, այնքան ավելի ամուր են նրա համոզմունքները և ուժեղ՝ գործունեության բարոյական խթանները, այնքան ավելի արդյունավետ է դառնում ինքը՝ գործունեությունը:

Այդպիսով կոմունիստական աշխարհայացքի սկզբունքները վերածվում են խոր անձնական համոզմունքների, մարդու վարքագիծը որոշող գործոնի: Կոմունիստական աշխարհայացքի գիտակցված յուրացումը ծնում է որոշակի սոցիալական, բարոյական, գեղագիտական կողմնորոշումներ, պայմանավորում է անհատի ինքնորոշումը զանազան հանգամանքներում՝ հասարակական կյանքի կամ անձնական կենցաղի հարցերում, արդի երևույթների, անցյալ պատմության, գիտական իմացության, սոցիալական կանխատեսման գնահատման մեջ: Դիալեկտիկա-մատերիալիստական աշխարհըմբռնումը, որը հիմնավորում է իրականության համակողմանի ճանաչման, անընդմեջ առաջընթաց շարժման, ծագող դժվարությունների և հակասությունների հաղթահարման միջոցով կյանքի ձևերի կատարելագործման հնարավորությունն ու անհրաժեշտությունը, նպաստում է կոմունիստական հասարակական իդեալներին ու նպատակներին հասնելու համար անհատի, աշխատավոր դասակարգերի ակտիվ գործունեության անհրաժեշտության ընկալմանը, բուրժուական գաղափարախոսության, քաղքենիական բարքերին, ոչ գիտական հայացքներին, հակասոցիալիստական երևույթներին՝ բյուրոկրատիզմին, անհատի նկատմամբ անուշադիր վերաբերմունքին, բոլոր հակահասարակական արարքներին ակտիվորեն հակազդելու նշանակության ըմբռնմանը:

Այլ կերպ ասած, մարքս-լենինյան աշխարհայացքի տիրապետումը պայմանավորում է մտածելակերպի համապատասխանությունը սոցիալիստական ապրելակերպին, դրանց միասնությունը: Այդ դրսևորվում է անհատի սոցիալական կապերի ողջ բազմազանությամբ, շրջապատող աշխարհի, սեփական

վարքագծի ու արարքների նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքով։

Մարքս-լենինյան աշխարհայացքի հումանիստական դերն է այս, որի նպատակն է դաստիարակել ժողովրդի բարօրության, հասարակական առաջընթացի համար գործունյա, ակտիվ անհատ։

Կոմունիստական աշխարհայացքի սկզբունքները, դառնալով նրբքին համոզմունքներ, անհատի սովորական պահանջմունք, մարմնավորվում են նրա գործողություններում և արարքներում. իր հերթին մարդու այս կամ այն արարքը կամ գործողությունը հիմք են տալիս դատելու նրա աշխարհայացքային հասունության մասին։ Հասարակական ակտիվություն, բարոյական վեհ հատկություններ, քաղաքական գիտակցականություն, կոմունիստական վերաբերմունք աշխատանքի նկատմամբ, աշխատանքային կարգապահության պահանջների, հասարակական կարգի կանոնների կատարում, սոցիալիստական ինտերնացիոնալիզմ և հայրենասիրություն, անհաշտվողականություն բուրժուական գաղափարախոսության ու բարոյականության հանդեպ, հետևողական պայքար բոլոր բացասական երևույթների դեմ թե՛ արտադրության մեջ և թե կենցաղում, այսինքն, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, սոցիալական փաստեր, անհատի գործողություններ (տե՛ս Երկ., հ. 1, էջ 514)— ահա որոնք են կոմունիստական աշխարհայացքի տիրապետման օբյեկտիվ ցուցանիշները։

Կոմունիստական աշխարհայացքը հայացքների մի ավարտուն ամբողջություն է, և մարդկանց կենսագործունեության որ բնագավառին էլ որ դիմենք՝ էկոնոմիկային, քաղաքականությանը, գաղափարախոսությանը, կուլտուրային, կենցաղին, ամենուրեք որպես աշխարհայացքային ամբողջության և հասունության չափանիշներ են մարդկանց սոցիալական ակտիվությունը, կազմակերպվածությունն ու պատասխանատվությունը, նրանց իրական ավանդը նորի, առաջադիմականի ստեղծման գործում։ Կոմունիստական աշխարհայացքն անհամատեղելի է անհատի՝ յուրատեսակ երկատման հետ, երբ, օրինակ, արտադրության լավ աշխատողը խուսափում է հասարակական գործունեությունից և կամ քաղաքականության հարցերում լավ գիտակ մարդը հաշտվողական է բուրժուական բարոյականության դրույթներին։ Կոմունիստական աշխարհայացքի տիրապետումն արտահայտվում է իրականության երևույթների ու պրոցեսների գիտական մեկնաբանման, բարոյական վեհ հատկությունների, աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի, հասարակական-քաղաքական ակտիվության, սոցիալիստական համակեցության կանոնների անշեղ կատարման, սովետական ապրելակերպի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության պահանջների կատարման մեջ, արտադրությունում ու կենցաղում բոլոր բացասական երևույթների նկատմամբ անհաշտվողականության, հակագիտական գաղափարախոսության բոլոր տարատեսակությունների ու դրսևորումների դեմ մղվող հետևողական պայքարում և այլն։

Այսպիսով, կոմունիստական աշխարհայացքի հետևողական ու ամբողջական տիրապետումը ապահովվում է գիտելիքների, համոզմունքների և գործողությունների միասնությամբ, ենթադրում է կոմպլեքսային մոտեցման իրականացում դաստիարակության մեջ։ Մարքս-լենինյան տեսության յուրացումը, դրա իդեալների, սկզբունքների վերածումը մարդու անձնական համոզմունքների ու նպատակամետ ձգտումների, նրա ակտիվ գործունեությունը դրանց իրագործման համար այն եռմիասնական խնդիրն է, որ հետևողականորեն լուծում է կոմունիստական կուսակցությունը մեր երկրի բոլոր քաղաքացիների հոգևոր նոր կերպարի ձևավորման ասպարեզում ծավալած իր տիտանական գործունեությամբ։ «Կոմունիստական գաղափարայնությունը,— շեշտեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարում Կենտկոմի ներկայացրած հաշվետու զեկուցման մեջ,— գիտելիքների, համոզմունքների և պրակտիկ գործողությունների մի համաձուլվածք է»։

Պատմական ամեն մի ժամանակաշրջանում կոմունիստական աշխարհայացքի սկզբունքները, պահանջները ձեռք են բերում նոր առանձնահատկություններ, ծառայում կոնկրետ պրոբլեմների լուծման։ Այսպես, կուսակցությունն այժմ հատուկ ուշադրություն է նվիրում այն բանին, որ կադրերի առջև



ծառացած պրոբլեմների վիթխարի մասշտաբներն ու բարդությունը առավել բարձր պահանջներ են հարուցում նրանց։ Արդի պայմաններում այլ է հասարակության յուրաքանչյուր անդամի պահանջկոտության աստիճանն իր նկատմամբ, իր գործունեության հանդեպ։ Առանց խիստ պահանջկոտության, ողջ աշխատանքի որակի բարձրացման հնարավոր չէ լուծել սոցիալ-տնտեսական հիմնական պրոբլեմները։ Հաշվի առնելով հենց հոգևոր գործոնների՝ որպես հասարակական առաջընթացի ներգործուն արագացուցիչների հարաճուն նշանակությունը, կուսակցությունը մեր օրերում առանձին սրությամբ է դնում գաղափարայնության պրոբլեմները, շեշտում նրա ներգործուն նշանակությունն ու իմաստը։

Դաստիարակչական աշխատանքում կոմունիստական կուսակցությունն առաջնակարգ տեղ է հատկացնում յուրաքանչյուր մարդու մեջ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ձևավորմանը, որը լիովին համապատասխանում է կոմունիստական աշխարհայացքի դրույթներին։ Վ. Ի. Լենինը հրամայաբար պահանջում էր. «Ավելի շատ ուշադրություն այն բանին, թե ինչպես բանվորական և գյուղացիական մասսան իրականում կառուցում է մի նոր բան իր առօրյա աշխատանքում։ Ավելի շատ ստուգում... թե որքան կոմունիստական է այդ նորը» (Երկեր, հ. 28, էջ 109)։ Իրականացնելով Լենինի այդ պատգամը, մեր կուսակցությունն իր կարևորագույն պարտքն է համարում ամեն կերպ խրախուսել, պաշտպանել և տարածել առաջավորների իրոք գործարար ու օգտակար նախաձեռնությունները, այն բազմապիսի հասարակական-քաղաքական և աշխատանքային ստեղծագործական ձեռնարկումները, որոնք նպաստում են կոմունիստական շինարարության խնդիրների ավելի արդյունավետ լուծմանը։ Քաղաքական և աշխատանքային դաստիարակության սերտ միասնության անհրաժեշտությունը կարևոր օղակ է դաստիարակչական ողջ պրոցեսի նկատմամբ կուսակցության մշակած կոմպլեքսային մոտեցման գործում։

Արդի պայմաններում դժվար է գերագնահատել կոմունիստական աշխարհայացքի ամենագլխավոր սկզբունքի՝ նրա կուսակցականության նշանակությունը։ Կոմունիստական աշխարհայացքի կուսակցական բնույթը, այսինքն՝ բանվոր դասակարգի, աշխատավորների շահերի, ճշմարտության, առաջադիմության շահերի ուղղակի և բացահայտ պաշտպանությունը պարտավորեցնում է ակտիվորեն հաստատել ու տարածել հասարակական ու բնական երևույթների դիալեկտիկա-մատերիալիստական մեկնաբանումը, զերծ պահել մարդուն այն ամենից, ինչը կաշկանդում և քայքայում է նրա ինտելեկտը և հույզերը։

Կուսակցական սկզբունքայնության անհրաժեշտությունը աշխարհայացքի հարցերում այժմ պայմանավորված է նաև այն բանով, որ կոմունիստական աշխարհայացքի և բարոյականության ձևավորումը տեղի է ունենում միջազգային ասպարեզում ամենասուր գաղափարական պայքարի իրադրության մեջ։ Աշխարհայացքային հարցերում անհոգությունը կամ անտարբերությունը վնասակար են։ Արտաքուստ ապաքաղաքական բուրժուական ուղղություններն ու հոսանքները նպատակ ունեն գաղափարազրկության պատրվակի տակ կազմալուծել սոցիալիստական երկրների ժողովուրդների ստեղծագործական ջանքերը, նրանց զրկել վսեմ իդեալներից, սերմանել ինդիվիդուալիզմ և անարխիզմ, կաշկանդել նրանց եռանդն ու հեղափոխական ավյունը։ Այս ամենը պահանջում է դաստիարակության գործում հետևողականորեն դրսևորել դասակարգային գիծը, գաղափարական դիրքերի հստակությունն ու պարզությունը, հետևողական պայքար ապոլիտիզմի, ազգայնականության, մասնավոր սեփականատիրական վերապրուկների և քաղքենիական տրամադրությունների դեմ, սոցիալիզմի նվաճումների նկատմամբ նիհիլիստական վերաբերմունքի դրսևորումների, ոչ մարքսիստական հայացքների ներթափանցման դեմ։

Կուսակցականության սկզբունքը կոմունիստական աշխարհայացքում ենթադրում է սոցիալական պրակտիկայով և գիտությունների զարգացմամբ առաջադրված մեթոդոլոգիական նոր պրոբլեմների համակողմանի տեսական վերլուծություն և լուծում։ Մարքս-լենինյան տեսությունն անխզելիորեն կապված է

կյանքի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պրակտիկայի հետ, սոցիալական և ազգային ազատագրության համար միջազգային բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների ու ճնշված ժողովուրդների մղած պայքարի հետ:

Մեր ժամանակներում առանձնապես ակնհայտորեն իսկական հումանիզմը, պատմական լավատեսությունը մարմնավորվել են մարքսիզմ-լենինիզմի հեղափոխական ուսմունքում, որը հիմնավորում է կապիտալիզմը սոցիալիզմով փոխարինվելու անխուսափելիությունը, հասարակության վերընթաց զարգացման անկասելիությունը, որի ընթացքում ապահովվում են մարդու ուժերի և ընդունակությունների ծաղկումը, քաղաքակրթության հասունների մատչելիությունը ժողովուրդների, յուրաքանչյուր անհատի համար: Կոմունիստական օպտիմիզմը հակադրվում է մասնավոր սեփականատիրական աշխարհի հոգևոր կյանքի այնպիսի արժույթներին, ինչպիսիք են սոցիալական անելանելիությունը, անկումային աշխարհզգացողությունը, հակահումանիզմը:

Մարքսիստ-լենինյանների սոցիալական լավատեսությունը հուսալի տեսական հիմք է գտնում կոմունիստական աշխարհայացքում, կյանքի իմաստի մարքսիստական ըմբռնման, կյանքի նկատմամբ ունեցած նրանց կենսահաստատ վերաբերմունքում: Սոցիալական լավատեսության գիտականորեն հիմնավորված գաղափարների իբրև մասսայական տարածման համար այդ ելակետային աշխարհայացքային նախադրյալներն ամրապնդվում են մեր երկրի, մյուս եղբայրական երկրների սոցիալիստական հասարակական հարաբերությունների պրակտիկայով:

Սոցիալիզմի օբյեկտիվ նվաճումները, նոր կարգի վիթխարի հնարավորությունների գիտակցումը սովետական մարդու լավատեսության հիմքն են: Իհարկե, այստեղ հարկավոր է խուսափել գռեհկացումներից՝ թե իբր նոր հասարակարգում բացառվում են դժվարություններն ու հակասությունները և կամ թե այնտեղ չեն կարող լինել առանձին հոռետես մարդիկ: Սոցիալիզմի պատմական բոլոր առավելությունները միանգամից չեն բացահայտվում. հատկապես առաջին շրջանում սոցիալիզմն ստիպված է լինում հաղթահարել այն դժվարությունները, որոնք խանգարում են արագ ու լրիվ իրականացնելու իր իդեալները: Ասենք՝ տարբեր կերպ են դասավորվում նաև մարդկանց առանձին ճակատագրեր: Անձնական վիշտը, ձախողված կյանքը առանձին անհատի մոտ կարող են ծնել հոռետեսական զգացումներ: Բայց երբ մենք խոսում ենք սովետական ժողովրդի բնորոշ գծի մասին, մենք նկատի ունենք սովետական մարդկանց բացարձակ մեծամասնությանը հատուկ առանձնահատկությունը:

Սովետական մարդու սոցիալական լավատեսության, սոցիալական վստահության կարևորագույն նախադրյալն այն է, որ հումանիզմի պրոբլեմը սոցիալիստական կարգի պայմաններում ստանում է նոր բովանդակություն. սոցիալիստական հումանիզմի համար բնորոշ են պրակտիկ ներգործունությունը, մշտական հոգատարությունը հասարակության բոլոր անդամների աճող նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման համար: Առատության, նյութական բարեկեցության պրոբլեմն ամենաանմիջական առնչություն ունի ողջ ապրելակերպի, այդ թվում և մարդկանց տրամադրության, դրական էմոցիաների, սոցիալական վստահության ձևավորման, մասսաների լավատեսական աշխարհզգացողության հետ: Կոմունիստական աշխարհայացքը մերժում է արհեստական աշխուժությունը, կեղծ բարեպաշտությունը, որը ժխտում է նյութական առատության, ժողովրդի բարեկեցության դերը նրա լավատեսական տրամադրության հաստատման գործում: Աղքատությունը, ճգնավորությունը նա երբեք չի կապել և չի կապում սոցիալական գոյավիճակի իդեալի հետ:

Այսպիսով, սոցիալիզմի սոցիալական սկզբունքները, ամենօրյա պրակտիկան, կուսակցության հետևողական գաղափարադաստիարակչական աշխատանքը նպաստում են այն բանին, որ մարդը յուրացնում է կոմունիստական աշխարհայացքի հաստատած արժույթները՝ վստահություն վաղվա օրվա նկատմամբ, սոցիալական լավատեսություն, բուռն ձգտում դեպի ապագան: Մարքս-լենինյան տեսության սկզբունքներին համապատասխան, մարդու հասարակական վարկը որոշում են ամենից առաջ անձնական հատկությունները,



անձնական աշխատանքը, հասարակությանը նրա տված արժեքների չափը: Այստեղ մերժվում են հասարակական բարօրության արհամարհումը, հասարակական պասիվությունը, իսկ առավել ևս հակահասարակական գործողությունները, քաղքենիական-եսամոլական սպառողական հոգեբանությունը, իրերի պաշտամունքը, որոնք խեղդում են ամեն մարդկայինը:

Զարգացած սոցիալիզմը նպաստավոր պայմաններ է ստեղծում բնակչության նորանոր խավերին կոմունիստական աշխարհայացքին հաղորդակից դարձնելու համար: Ակներև է, որ այժմ ՍՍՀՄ-ում կոմունիստական աշխարհայացքը մասսայական է, որը հատուկ է լենինյան կուսակցության դաստիարակած միլիոնավոր մարդկանց:

Մեր ժողովրդի հեղափոխական-վերակերտիչ գործունեության ընթացքում, ստեղծարար աշխատանքում, սոցիալիզմի և կոմունիզմի իդեալների հաղթանակի համար մղվող պայքարում կազմավորվեց անհատի նոր տիպ՝ սովետական մարդը: Մեծ Հոկտեմբերից հետո անցած վաթսունամյակի կարևորագույն արդյունքների թվում կուսակցության XXV համագումարը առանձնապես նշեց հենց այդ նոր, սոցիալիստական տիպի անհատի ձևավորումը: Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ տրված է սովետական մարդու վառ ու բովանդակալից բնութագիրը. «Մարդ, որ կարողացավ ազատությունը նվաճելուց հետո այն պաշտպանել ամենածանր մարտերում: Մարդ, որը կառուցեց ապագան, չխնայելով ուժերը և դիմելով ամեն մի զոհաբերության: Մարդ, որն անցնելով բոլոր փորձությունների միջով, ինքն էլ փոխվեց անճանաչելիորեն, իր մեջ միացնելով գաղափարական համոզվածությունն ու հսկայական կենսական եռանդը, կուլտուրան, գիտելիքները և դրանք կիրառելու կարողությունը: Դա մի այնպիսի մարդ է, որը լինելով ջերմագին հայրենասեր, եղել է և միշտ կլինի հետևողական ինտերնացիոնալիստ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 131):

Հիրավի, ամենադժվարին ու ամենանուրբ գործում՝ նոր մարդու դաստիարակության մարզում, մեր նվաճումներն անվիճելի են: Սակայն այս ոլորտում ևս դեռ լուծելու բազմաթիվ դժվարին խնդիրներ կան: Նշենք, օրինակ, որ տակավին վերացված չեն սոցիալիզմի իրավական և բարոյական նորմերի խախտումները, բազմաթիվ ազնիվ սովետական մարդկանց մեջ առօրեական գիտակցությունը, բարոյականության հասարակ նորմերը դեռևս կապված չեն գիտատեսական կոմունիստական աշխարհայացքի հետ և այլն:

Այդ առնչությամբ աշխատավորների կոմունիստական դաստիարակության ընդհանուր կուսակցական, համաժողովրդական գործի կարևորագույն խնդիրն է օգնել յուրաքանչյուր մարդու, նրա գիտակցությունը, ճաշակները, հակումներն ու ձգտումները ձևավորել այնպես, որ անձնական և հասարակական կյանքի, հոգևոր և արտադրական գործունեության բոլոր ոլորտներում կոմունիզմի իդեալների անշեղ իրականացման համար մղվող պայքարը դառնա նրա ներքին պահանջմունքը, բացառությունները բացասող սովորույթ: Հատկապես նշենք սոցիալիստական համակեցության նորմերի, մեր հասարակության օրենքների ամեն տեսակ խախտումների դեմ եռանդուն պայքարի անհրաժեշտությունը: Այստեղ ևս դրական արդյունք կարող են տալ ներգործության հենց կոմպլեքս ձևերի ու միջոցների, աշխատանքային կոլեկտիվի կարծիքի, մամուլի քննադատական խոսքի, համոզման մեթոդների և օրենքի ուժի օգտագործումը:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, ելնելով XXV համագումարի որոշումներից, իր գաղափարական աշխատանքը կազմակերպում է այնպես, որ ամեն ինչ նպաստի հասարակության յուրաքանչյուր անդամի կոմունիստական աշխարհայացքի կազմավորմանն ու զարգացմանը:

Կոմունիստական աշխարհայացքի սկզբունքների անշեղ ու հետևողական իրականացումը, մարդկանց նորանոր սերունդներին մարքս-լենինյան գաղափարներով զինելը նրանց բովանդակալից կյանքի, ամեն մի անհատի հոգևոր կարողությունների, ունակությունների և ձիրքերի բացահայտման գրավականն են, կոմունիզմի կառուցման բարձրագույն նպատակի լուծման՝ անձնավորության համակողմանի զարգացման գրավականը:

# ԿԻՆՈԱՐՎԵՍՏԻ ՆԵՐԳՈՐԾՈՒՆ ՈՒԺԸ

**Գ. Ա. ՀԱՅՐՅԱՆ**
ՀՍՍՀ Մինիստրների սովետի կինեմատոգրաֆիայի պետական կոմիտեի նախագահ

*ԱՆՑՅԱԼ ԴԱՐԻ ՎԵՐՋԻՆ, երբ Լյումիեր եղբայրները ցուցադրեցին իրենց առաջին կինոնկարը, մարդիկ զարմացած բացագանչեցին՝ հրա՞շք է։*

*Այո՛, հրաշք է, բայց ոչ բոլորի կողմից ճիշտ ընկալվեց։ Ոմանք, չհասկանալով դրա էությունը, շտապեցին հայտարարել, որ այն աճպարարություն է, անհեռանկար զբաղմունք։*

*Ժամանակը, սակայն, ցույց տվեց այդ դատողությունների սնանկությունը. հետագա նկարները, ի հեճուկս իրենց ընդդիմախոսների, աշխարհին ավետեցին մի նոր արվեստի՝ կինոարվեստի ծնունդը, որը մեծապես պայմանավորված էր նաև ժամանակակից տեխնիկայի զարգացմամբ։*

*Բայց ո՞րն էր, այնուամենայնիվ, այս նոր արվեստի առինքնող ուժը, որ կարողացավ ամենակարճ ժամանակամիջոցում իր վրա բևեռել մարդկանց առավել անող հետաքրքրությունը։ Այդ կարելի է բացատրել երկու հանգամանքով։ Նախ՝ կինոյի արտահայտչամիջոցները շատ ավելի մատչելի են, պարզ։ Էկրանը հնարավորություն ունի առարկաները ցուցադրելու իրենց բնական վիճակում, այն ստեղծում է իրականության պատրանք. հանդիսատեսին հանելով դիտասրահից՝ տանում է նրան մե՛րթ բնության գիրկը, մե՛րթ քաղաքների ժխորը, ներկայացնում առարկայի բոլոր մանրամասները, մարդկային դեմքի ամենաաննկատ կնճիռն ու հայացքի նրբերանգները։ Հայտնի է վաղուց արդեն ծիծաղաշարժ դարձած այն իրողությունը, որ երբ Լյումիեր եղբայրները ցուցադրում էին իրենց առաջին կինոնկարը, հանդիսատեսները խուճապահար թողեցին դահլիճը, վախենալով ընկնել էկրանից դեպի իրենց սուրացող գնացքի տակ։*

*Այս յուրահատկություններն էլ պետք է համարել կինոարվեստի այն ներգործուն ուժը, որը կարող է և՛ դրական, և՛ բացասական դեր խաղալ հանդիսատեսի համար, նայած ո՛վ է տնօրինում այդ գործը, ի՛նչ ուղղությամբ է զարգանում կինոն։ Սկզբից իսկ այդ հանգամանքը նկատեցին ժամանակի առաջավոր մտածողները։ Երիտասարդ Գորկին, օրինակ, հիանալով Լյումիերյան առաջին կինոնկարներով, որոնցում ստեղծված էր իրականության լրիվ պատրանք, միաժամանակ կանխազգում էր, որ շուտով այս գործի տերերը չեն բավարարվի սոսկ շարժվող օբյեկտների՝ շարժվող գնացքների, ծփացող ալիքների ցուցադրմամբ և կտարվեն այնպիսի սյուժեներով, ինչպիսիք են՝ Կինը մերկանում է, Կինը հագնում է գուլպաները և այլն։*

*Եվ, իրոք բուրժուական աշխարհում կինոն դարձավ ո՛չ միայն շահույթի աղբյուր, այլև մասսաների այլասերման, նրանց ուշադրությունը կյանքի կենսական հարցերից շեղելու միջոց։ Հոլիվուդը՝ կինոստուդիաների այդ խոշորագույն կենտրոնը, հռչակվել է որպես «երազների ու անուրջների ֆաբրիկա»։ Այն իր հանդիսատեսին հրամցրել ու հրամցնում է մեղուշ հեքիաթներ, որոնցում, ցուցադրելով մշտապես հաղթանակող մեծահոգությունը, հովվերգական կյանքի բարիքները, այն պատրանքն է քարոզում, թե այդ ամենը հասանելի է ամեն մի միջին ամերիկացու.*



*Բնորոշ է նաև, որ հիտլերյան ֆաշիզմի տիրապետության դաժան տարիներին, երբ դարչնագույն համաճարակը հնձում էր միլիոնավոր կյանքեր ո՛չ միայն օկուպացված երկրներում, այլև բուն Գերմանիայում, գերմանական կինոարվեստը շեղում էր մարդկանց ուշադրությունը, ցուցադրելով թեթև ժանրի կինոստեղծագործություններ, զվարճալի կինոօպերետներ ու հոգեցունց մելոդրամներ։*

*Ժամանակակից բուրժուական կինոարվեստը մասսաների մեջ արմատավորում է բռնություն, դաժանության պաշտամունք, հեղեղելով էկրանները պոռնոգրաֆիկ, այսպես կոչված՝ «սեքսուալ» կինոնկարներով։ Բուրժուական կինոյի հերոսները մեծ մասամբ շվայտ, այլասերված եսապաշտներ են, նրանց գործողությունների հիմքում ընկած է «մարդը մարդուն գայլ է» սկզբունքը։ Իր նպատակին հասնելու համար այդ «հերոսը» խտրություն չի դնում միջոցների մեջ, սպանում է, բռնադատում, դաժանորեն ոտնահարում մարդու իրավունքները, ծանակում այլոց արժանապատվությունը։ Այդ են պատկերում Հոլիվուդի նկարահանած* Տականքներ *և* Միջադեպ *կինոնկարները։ Մոտոցիկլիստների բանդան սանձարձակ գործողություններով, անպատիժ, սարսափի մեջ է պահում մի ամբողջ քաղաք (*Տականքներ*)։ Իսկ* Միջադեպ*-ում՝ նյույորքյան մետրոյի վագոնում երկու անառակներ իրենց լպիրշ, անմարդկային արարքներով վիրավորում, ծաղր ու ծանակի են ենթարկում ուղևորներին։ Կարծես թե ֆիլմերի հեղինակները ձաղկում են բուրժուական իրականության վայրենի բարքերը։ Սակայն հարց է ծագում. կարելի՞ է այդքան երկար ժապավեն հատկացնել այդ արատների անտարբեր, նատուրալիստական ցուցադրմանը, որոնք հանդիսատեսի հոգում ոչ մի գեղեցիկ հույզ չեն արթնացնում։ Ավելին, այդ վայրագ պատկերներն ընդօրինակում են դեռահասները, որի մասին, ի դեպ, խոստովանում են նույնիսկ կապիտալիստական աշխարհի հոգեբանները, մանկավարժները, քրեագետները։ Ինչ խոսք, բուրժուական կինոարվեստում կան գործիչներ, որոնց ստեղծագործություններն օժտված են ռեալիստական պաթոսով, սակայն դրանք չեն փոխում բիզնեսի համար ստեղծված կինոյի գեղագիտական ընդհանուր ուղղությունը, տենդենցը։*

***

*Սովետական կինեմատոգրաֆիան մեծ Հոկտեմբերի ծնունդն է, նոր կյանքի, ռեալ հումանիզմի հաստատման գեղարվեստական արտահայտությունը։ Բարձր գնահատելով արվեստի այս նոր տեսակի դերն ու նշանակությունը մասսաների դաստիարակության գործում՝ Վ. Ի. Լենինն ասել է. «...մեզ համար բոլոր արվեստներից ամենակարևորը կինոն է»։*

*Հարուստ, բեղմնավոր է սովետական կինոարվեստի ուղին։ Ասես, իրականացել է Մ. Գորկու կանխատեսությունը. կինոն դարձել է լայն գիտելիքների տարածողն ու գեղարվեստական ստեղծագործությունների մասսայականացնողը, մուտք է գործել դեմոկրատական շերտերի մեջ, հաշվի նստել ժողովրդի պահանջների ու ճաշակի հետ, սերմանում է բանականը, բարին ու հավերժականը։*

*Շատ կարճ ժամանակամիջոցում մեր կինոարվեստն աննախադեպ թռիչք ապրեց, արժանացավ համաշխարհային ճանաչման, ստեղծելով այնպիսի գլուխգործոցներ, ինչպիսիք են* «Պոտյոմկին» զրահանավը, Չապաևը *և այլն։*

*Դժվար է գերագնահատել սովետական կինոարվեստի դերը ժողովրդի գաղափարա-գեղագիտական դաստիարակության ոլորտում։ Կարելի է նշել բազում ֆիլմեր, որոնք դարձել են մեր հանդիսատեսի կյանքի ուղեկիցը, խորհրդատուն։ Մեր կինոն գեղարվեստական վառ միջոցներով մարդկանց համակում է կոմունիստական վսեմ գաղափարներով, նպաստում համակողմանի, ներդաշնակ զարգացած անհատի ձևավորմանը, հաստատում սոցիալական լավատեսության սկզբունքները։ Սովետական կինոարվեստի հիմնական խնդիրը մեր ժամանակակցի՝ նոր կյանք կառուցողի ամբողջական կերպարի*

մաններից, վերացականությունից։ Քիչ չեն այնպիսի գրական հերոսները, որոնք անհամոզիչ են, անիրական, սոսկ գաղափարի խոսափողներ։

Հանդիսատեսը, հատկապես պատանի, կարիք ունի ռոմանտիկայով թաթավուն այնպիսի ստեղծագործությունների, որոնց հերոսներն ընդունակ են խիզախումների, աչքի են ընկնում խոր գաղափարայնությամբ, անվեհերությամբ, մարդկային ջերմ, անկեղծ զգացմունքներով։ Սովետական կինեմատոգրաֆիստները ջանում են ստեղծել առավել գրավիչ ֆիլմեր, զարգացնելու համար հանդիսատեսի ճաշակը, նրան համակելու վեհ գաղափարներով, դաստիարակելու կոմունիզմի գործին նվիրված հերոսների օրինակով։ Պատանեկության դաստիարակության առումով հետաքրքրական են հատկապես է. Քեոսայանի Անորսալի վրիժառուները, Անորսալի վրիժառուների նոր արկածները ֆիլմերը ու Կամոյին նվիրված տրիլոգիան։

Հայ կինոարվեստը բազմիցս դիմել և այսօր էլ շարունակում է դիմել պատմահեղափոխական թեմային։ Պետք է ասել, որ այստեղ ևս նկատելի են հաջողությունները։ Այդ մեր պատմության այն շրջանն է, որ լի է հեղափոխական ռոմանտիկայով, սովորական մարդկանց արտասովոր արարքներով։

Հայֆիլմը շուտով հանդիսականի ուշադրությանը կներկայացնի Ծնունդ պատմագեղարվեստական կինոնկարը։ Այս ֆիլմում դերասան Խ. Աբրահամյանին հաջողվել է կերտել Ալեքսանդր Մյասնիկյանի՝ լենինյան տիպի կոմունիստ-ղեկավարի անզուգական կերպարը, որին հատուկ են վառ անհատականությունը, իր ժողովրդի շահերով ապրելու խոր գիտակցությունը, ինտերնացիոնալիզմը, պարզ ու համեստ բնավորությունը, գործողությունների մեջ՝ սկզբունքային հետևողականությունը։

Կինոարվեստի օբյեկտիվում մշտապես պետք է տեղ գտնեն մեր հերոսական առօրյան պատկերող դրվագները, աշխատանքի մարդը, մեր ժամանակի հերոսը։ «Հայֆիլմ» կինոստուդիայում որոշ բան արված է այս ասպարեզում, բայց այն դեռ չի կարող բավարարել մեր խստապահանջ հանդիսատեսին։ Վերջին տարիների մի շարք նկարներում (Այստեղ, այս խաչմերուկում, Կարծր ապար, Մարդը Օլիմպոսից, Հրաշեկ իճճնաքիռ և այլն) փորձ է արվում մարմնավորելու կառուցող բանվորների, ինժեներների կերպարը։ Հաջողությունն անուրանալի է։ Չնայած այդ հերոսները համակում են հանդիսատեսին իրենց նվիրվածությամբ, դրական հատկանիշներով, այդուհանդերձ նրանք տպավորիչ չեն և շուտով մոռացվում են։

Գյուղի մասին ստեղծված կինոժապավենները հարուստ են մեր բնաշխարհը պատկերող տեսարաններով, գեղեցիկ բնանկարներով։ Այդ կարևոր է, հետաքրքրական։ Բայց դրա հետ մեկտեղ, և դրանից առավել, մեզ հետաքրքրողը մարդն է, այդ բնությունը վերափոխող մարդը։ Հայ գյուղացին մեր հաջողված ժապավեններում կա՛մ հովիվ է, կա՛մ կոլտնտեսության բրիգադավար։ Այդ, անշուշտ, չի կարող լրիվ պատկերացում տալ այսօրվա հայ գյուղի, նրա մարդկանց մասին։

Մեր կինոգործիչները դեռևս ինչպես հարկն է չեն արտացոլել նաև Հայրենական պատերազմի մասնակցի անօրինակ սխրանքը։ Այս գործում փաստի վավերացումից այն կողմ չենք անցել։ Մինչդեռ արվեստի ուժը փաստի բովանդակության, էության բացահայտումն է։ Իսկ փաստեր, որքան ասեք, կան։ Չէ՞ որ հայ ժողովրդի լավագույն զավակները, սովետական մյուս ժողովուրդների կողքին, կենաց ու մահու կռիվ մղեցին մեծ ռազմաճակատի տարբեր հատվածներում և փառքով պսակեցին իրենց։ Նախատիպերի այսպիսի առատության պայմաններում մեզ դեռ չի հաջողվել ստեղծել զինվորի լիարյուն կերպարը։ Այդ անհրաժեշտ է ո՛չ միայն պատերազմի հերոսների հիշատակը հավերժացնելու, այլև երիտասարդ սերնդին նրանց մեծագործությունների օրինակով դաստիարակելու համար։

Մեզ համար էական է նաև ժողովրդի պատմության կարևոր իրադարձությունների, ինչպես ևականավոր գործիչների կյանքի վերհանումը։ Չէ՛ որ գեղարվեստորեն վերարտադրված անցյալը արձագանքում է նաև արդիականության այրող հարցերին, մեր ժամանակակից հույզերին։ Հիշենք պատերազմի տարիներին էկրանացված Դավիթ-բեկ կինոնկարը, հետպատերազմյան տարիների Հյուսիսային ծիածանը...



Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միավորվելու 150-ամյա հոբելյանի օրերին էկրան կբարձրացվի Սերո Խանզադյանի Մխիթար սպարապետը վեպի հենքի վրա ստեղծված երկսերիանոց Փոթորկոտ կինոնկարը (ռեժիսոր Էդմոնդ Քեոսայան)։

Ուշագրավ գործեր են ստեղծել նաև հայ կինոդոկումենտալիստները։ Հատկապես վերջին տարիներին այս բնագավառում երևացին մի շարք երիտասարդ ստեղծագործողներ (Ս. Առաքելյան, Ա. Վահունի, Ռ. Գևորգյանց, Յու. Բաբախանյան, Ա. Փելեշյան և ուրիշներ), որոնց նկարահանած ֆիլմերը, վաղուց դուրս գալով հանրապետության սահմաններից, ցուցադրվում են երկրի էկրանների վրա։ Այդ ֆիլմերում վառ կերպով ցույց են տրված մեր ժողովրդի ստեղծագործ աշխատանքն ու պայքարը կուսակցության առաջադրանքների կատարման համար։ Փաստագրական որոշ ֆիլմեր իսկական արվեստի նմուշներ են։

Հայ երիտասարդ դոկումենտալիստներն իրենց առաջ խնդիր են դրել համակողմանի ցույց տալ մեր ժամանակի հերոսին— արտադրության մեջ, կենցաղում։ Հոկտեմբերյան հեղափոխության 60-ամյակի տոնակատարության օրերին փաստավավերագրական ստուդիան հանդիսատեսին կներկայացնի գունավոր, լայնէկրան փաստագրական նոր ֆիլմ՝ նվիրված Հայաստանի աշխատավորների հայրենանվեր գործերին։

Ընդլայնվել է Համո Բեկնազարյանի անունը կրող «Հայֆիլմ» կինոստուդիայի գործունեության ծրագիրը։ Մեզ մոտ նկարահանվում են ֆիլմեր՝ ամենամասսայական լսարանի՝ հեռուստադիտողների համար. նրանց ջերմ հավանությանն են արժանացել ռեժիսոր Լ. Գրիգորյանի Իմ սիրտը լեռներում է, Մագաղաթի գաղտնիքը, Կ. Գևորգյանի Օգոստոսը և այլ ֆիլմեր...

Բազմաբեղուն է Հայկինոյի գործունեությունը— կինոհանդեսից մինչև գեղարվեստական ու վավերագրական նկար, գրական հենքից մինչև էկրանավորման արժանի սցենար։ Ուրախալի է, որ կինոարվեստի նորանոր գործերի ստեղծմանն առավել ակտիվ է մասնակցում մեր երիտասարդությունը՝ վաղվա մեծ արվեստի արարիչը, մեր նոր հաջողությունների գեղարվեստական թարգմանը։

Մեծ Հոկտեմբերի պանծալի հոբելյանը կինոարվեստի գործիչները դիմավորում են ստեղծագործական հաջողություններով, հանդիսատեսի դատին ներկայացնում մեր հերոսական առօրյան արտացոլող նկարներ, որոնք, անշուշտ, մեծապես կնպաստեն սովետական մարդկանց գաղափարագեղագիտական դաստիարակությանը։ Սովետական կինեմատոգրաֆիստները ևս զինվորագրվել են կուլտուրայի գործիչների այն բազմամարդ բանակին, որը ջանում է կերտել մեր պատմությանը, մեր ներկային ու ապագային, մեր կուսակցությանն ու ժողովրդին արժանի նոր ստեղծագործություններ։

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Թ. Ս. ՄԻՆԱՍՅԱՆՑ**
ՀՍՍՀ կապի մինիստր

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ տարիներին մեր հանրապետության ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի հետ միասին խոշոր վերելք է ապրել նաև հանրապետության կապը։*

*Կապի հնագույն ճյուղի՝ փոստային ծառայության սկիզբը Հայաստանում համընկնում է Երևանի նահանգի կազմավորման հետ (1849 թ.), երբ բացվեց Թիֆլիս—Աղստաֆա—Դիլիջան—Ելենովկա—Երևան—Նախիջևան—Ջուլֆա—Օրդուբադ առաջին փոստային երթուղին։*

*Երևանի նահանգում գործում էին 18 փոստային ձեռնարկություններ, որոնք մեկ տարում առաքել էին ընդամենը 250 հազար նամակ՝ հիմնականում պետական մարմինների և տեղական ձեռնարկատերերի գրագրությունները։*

*1864 թ. գործարկվեցին Թիֆլիս—Դիլիջան—Երևան—Նախիջևան—Ջուլֆա, ապա՝ Դիլիջան—Ալեքսանդրապոլ հեռագրային գծերը, որոնցով սկզբնավորվեց էլեկտրակապը Հայաստանում։ Հեռագրային կապ ունեցող փոստային ձեռնարկությունների սակավությունը, հեռագրերի բարձր արժեքը և բնակչության անգրագիտությունը խոչընդոտում էին հեռագրակապի հետագա զարգացմանը նախահեղափոխական Հայաստանում։*

*Հայաստանում առաջին անգամ հեռախոսն օգտագործվել է դարասկզբին, Ղափանի և Ալավերդու հանքերի տարբեր տեղամասերում։ Հետագայում կառուցվել են Երևանի և Ալեքսանդրապոլի պարզունակ հեռախոսային կայանները։ 1913 թ. Հայաստանում կար ընդամենը 86, իսկ 1919 թ.՝ 109 հեռախոս։*

*Նախահեղափոխական Հայաստանի ծայրաստիճան քայքայված տնտեսության պայմաններում նոր սկզբնավորվող կապի առանձին ճյուղերն այդպես էլ մինչև հեղափոխությունը մնացին սաղմնային վիճակում և շատ թե քիչ զարգացում չստացան ինչպես քանակական, այնպես էլ որակական առումով։*

*Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին իսկ օրերից սովետական կառավարությունը մեծ ուշադրություն էր նվիրում կապի միջոցների զարգացմանն ու ընդլայնմանը՝ այդ նպատակին հատկացնելով զգալի միջոցներ։ Անգնահատելի էր հատկապես Սովետական Ռուսաստանի եղբայրական օգնությունը. այն մեր հանրապետությանը հատկացրեց մեծ քանակությամբ կապի սարքավորումներ, պահեստամասեր և գծային տնտեսության նյութեր։ Եղբայրական հանրապետություններից ժամանեցին բազմաթիվ բարձրորակ մասնագետներ։ Հայաստանի կապի համար բացվեց զարգացման լայն հեռանկարներով մի նոր շրջան։*

*Սովետական Հայաստանում 1928 թ. գործում էր փոստային 63 ձեռնարկություն, փոստային երթուղիների երկարությունը, 1913 թ. համեմատությամբ, ավելացել էր 3,5 անգամ։ Հանրապետության համարյա բոլոր գավառային կենտրոններն ունեին հեռագրային կապ մայրաքաղաքի հետ։ Երևանը միջքաղաքային հեռախոսակապով հաղորդակցվում էր Թբիլիսիի և Բաքվի, ինչպես նաև ներհանրապետական առանձին բնակավայրերի հետ։ Հանրապետության*



*հեռախոսային ցանցի հզորությունը հասել էր 5.088 համարի, որից 741-ը՝ գյուղական վայրերում։*

*Հետադարձ հայացք նետելով անցյալին, դժվար չէ նկատել, որ կապի զարգացման պատմությունը դա միաժամանակ այդ համակարգում նոր ճյուղերի, կապի ծառայության նոր ձևերի ստեղծման ու զարգացման պատմություն է։ Հանրապետության հասարակական-քաղաքական ու մշակութային կյանքում վիթխարի կարևորության իրադարձություն էր ռադիոյի՝ Վ. Ի. Լենինի դիպուկ բնորոշմամբ՝ առանց թղթի ու տարածության այդ լրագրի մուտքը։ Սովետական Հայաստանում առաջին ռադիոկայանը՝ 1,2 կվտ հզորությամբ, հիմնվել է 1926 թվականին։*

*Հաշվի առնելով հայկական ռադիոհաղորդումների նկատմամբ սփյուռքահայերի մեծ հետաքրքրությունը, 1946 թ. սկսած կանոնավոր հաղորդումներ են տրվում նաև նրանց համար։ Հայկական ռադիոյի ազդանշանները, այսպիսով, դուրս եկան ո՛չ միայն հանրապետության, այլև երկրի սահմաններից։*

*Հանրապետության կապի զարգացման համար առանձնապես բեղմնավոր եղավ հետպատերազմյան շրջանը։ Սովետական ժողովուրդը վերականգնում էր ֆաշիստական զավթիչների ավերած քաղաքներն ու գյուղերը։ Երկիրը բուժում էր իր վերքերը։ Մարդիկ նոր, խաղաղ ինֆորմացիայի կարիք ունեին։ Երկրի խաղաղ շինարարության ռիթմը ցրում էր պատերազմից մնացած վերջին տագնապները, վստահություն և հավատ ներշնչում մարդկանց, դառնում այն ամուր հոգեբանական հիմքը, որը սովետական մարդկանց նոր, խաղաղ սխրանքների վճռականություն էր հաղորդում։ Կապի երեկվա միջոցներն արդեն չէին բավարարում վերակառուցվող և հսկայի քայլերով առաջ ընթացող ժողովրդական տնտեսության, աշխատավորների պահանջմունքները։*

*«Մորզե», «Կլոպֆեր» հեռագրային սարքերը պատերազմից անմիջապես հետո սկսեցին աստիճանաբար փոխարինվել հեռագրային նոր տառատիպ սարքավորումներով, որոնց աշխատանքի հաճախականացված ռիթմը զգալիորեն գերազանցում էր նախորդների արագությանը։ Պետք է նշել, սակայն, որ նման սարքավորումների ներդրումը ևս չէր կարող բավարարել ժամանակի պահանջը, քանի որ գծային տնտեսության անբավարար մակարդակը դեռևս հնարավորություն չէր ընձեռում շրջանային բոլոր կենտրոններին՝ Երևանի հետ առանձին և ուղիղ գիծ ունենալու։ Ավելի վատ էր վիճակը քաղաքային և միջքաղաքային հեռախոսային կապերում։*

*Հետպատերազմյան շրջանի լուրջ նվաճումներից մեկը գծային տնտեսության զգալի ընդլայնումն ու լրացուցիչ գծերի կառուցումն էր, որի շնորհիվ հետագայում հանրապետության բոլոր քաղաքներն ու շրջանային կենտրոններն ստացան հեռախոսահեռագրային ուղիղ կապ մայրաքաղաքի հետ։ Օդային և կաբելային միջքաղաքային նոր գծերի կառուցումն ու խտացման սիստեմի սարքավորումների ներդրումը հնարավորություն ընձեռեցին հանրապետության շրջկենտրոնների, քաղաքների և մայրաքաղաքի միջև ստեղծելու հեռախոսահեռագրային կապերի փնջեր։*

*1958—1959 թթ. առաջին անգամ գործարկվեցին Երևան—Էջմիածին, Երևան—Արտաշատ կաբելային գծերը։ Մթնոլորտային տեղումներից և եղանակի փոփոխություններից «չվախեցող» այդպիսի կապն իր հուսալիությամբ զգալի առավելություն ուներ օդային գծերի նկատմամբ։ 1963 թ. շահագործման հանձնվեց Երևան—Սպիտակ—Թբիլիսի միջքաղաքային կաբելային գիծը, որով փաստորեն Թբիլիսիի միջոցով Երևան—Մոսկվա միջքաղաքային կապը ամբողջությամբ կաբելավորվեց։ Այդ գիծը գործարկվեց Երևան—Լենինական և Երևան—Կիրովական ճյուղավորումներով։*

*Քաղաքային հեռախոսային ցանցում ձեռքի սպասարկման սիստեմի կայանները փոխարինվեցին քայլային սիստեմի ավտոմատ հեռախոսակապով։ Այս տիպի առաջին կայանը, որն ուներ 6.000 համար, գործարկվեց Երևանում 1948 թ. դեկտեմբերին։ Դրան հետագայում հաջորդեց փոքր հզորության մի շարք այլ կայանների գործարկումը։*

Որքան էլ նշանակալից էին կապի զարգացման ասպարեզում մեր ձեռք բերած հաջողությունները, պետք է նշել, այնուամենայնիվ, որ կապի որակական տեղաշարժերի, նրա «երկրորդ շնչառության» շրջանը Հայաստանում սկսվեց իններորդ հնգամյակով, հնգամյակ, որը նվաճված բնագծերի ծավալով ու նշանակությամբ ամենաբեղմնավորը եղավ նախորդ բոլոր հնգամյակներից։

Երևանի և հանրապետության քաղաքների ու շրջկենտրոնների մեծ մասի միջև անցկացված կաբելային և օդային նոր գծերի, ինչպես նաև բազմականալ սարքավորումներով դրանց խտացման շնորհիվ զգալիորեն ավելացվեց միջքաղաքային հեռախոսային կապերի թիվը և երկարությունը։ Այս տարվա սկզբին հանրապետության միջքաղաքային հեռախոսային կանալների ընդհանուր երկարությունը հասնում էր 314.356 կանալոկիլոմետրի։ Միջքաղաքային գործող կանալների մոտ 50 տոկոսը գործում է կիսավտոմատ եղանակով։ Բացի դրանից, մի շարք գերատեսչությունների, օպերատիվ կապ հաստատելու համար, վարձավճարային օգտագործման են տրված միջքաղաքային կանալներ, որոնցով դրանք ուղիղ կապ են հաստատում հանրապետության տարբեր շրջանների՝ իրենց ենթակա հիմնարկ-ձեռնարկությունների հետ։ Միջքաղաքային կապերի 62,4 տոկոսը ստորգետնյա կաբելով է, իսկ հանրապետության հարավային շրջաններում դրանք ամբողջովին կաբելավորված են։

Այժմ միայն Երևանի միջքաղաքային հեռախոսակայանի միջոցով մեկ օրում իրականացվում է 16—17 հազար հեռախոսակցություն՝ 30 տոկոսն ավտոմատ, իսկ մոտ 40 տոկոսը կիսավտոմատ գծերով։ Երևանը միջքաղաքային ավտոմատ հեռախոսակապով միացած է հանրապետության 13 քաղաքների և շրջկենտրոնների, ինչպես նաև Մոսկվա, Բաքու և Դոնի-Ռոստով քաղաքների հետ։ Դոնի-Ռոստովի հետ ունեցած ավտոմատ կապի բազայի վրա Երևանը տրանզիտ ավտոմատ միջքաղաքային հեռախոսակապ է ստեղծում նաև Կիև, Տաշքենդ, Դուշամբե, Աշխաբադ, Օդեսա և մի շարք այլ քաղաքների հետ։ Պահանջվող քաղաքի պայմանանիշի ու կանչվող բաժանորդի համարի անմիջական հավաքմամբ ապահովվող կապը բացառում է հեռախոսավարուհու աշխատանքը։

Նույն սկզբունքով է իրականացվում հանրապետության չորս քաղաքներից առաջին անգամ Երևանի հետ ստեղծված ավտոմատ միջքաղաքային հեռախոսակապը։ Այժմ Կիրովականի, Դիլիջանի, Սևանի և Հրազդանի բնակիչները ավտոմատ միջքաղաքային հեռախոսակապով Երևանի ցանկացած բաժանորդի հետ կարող են կապ հաստատել։ Երևանում, Լենինականում, Ջերմուկում, Հոկտեմբերյանում, Կիրովականում , Աբովյանում, Ղափանում, Մասիսում և մի շարք այլ վայրերում տեղադրված են միջքաղաքային հեռախոսակապի 132 խցիկներ։

Եթե 1940 թ. Հայաստանում կար 9.950 հեռախոս (որից 957-ը գյուղերում), ապա վերջին մի քանի տարիներին միայն Երևանում շահագործման են հանձնվել 26, 34, 46, 53, 64 ինդեքսներով ավտոմատ հեռախոսակայանները, որոնցից յուրաքանչյուրը մայրաքաղաքի հեռախոսային ցանցն ավելացրել է 9—10 հազար հեռախոսով։ Մայրաքաղաքի Շահումյանի շրջանում 34 ինդեքսով վերջերս շահագործման հանձնված ԱՀԿ-ն հանրապետության անդրանիկ քայլային սիստեմի կոորդինատային կայանն է, որը լուրջ նորույթ է մեր քաղաքային հեռախոսային ցանցում։ Ընթացիկ տարվա սկզբին Երևանն ուներ 140 հազար հեռախոս։ Հանրապետության քաղաքային հեռախոսային ցանցի հզորությունը հասել է 253.430 համարի, իսկ գյուղական հեռախոսային ցանցինը՝ 61.810-ի։ Բնակարանային հեռախոսների քանակով մեր հանրապետությունը Սովետական Միության մեջ տոկոսային հարաբերությամբ գրավում է 2-րդ, իսկ 100 շնչին ընկնող հեռախոսների քանակով՝ 3-րդ տեղը (100 շնչին՝ 14,8 հեռախոս, միութենական 8,3-ի դիմաց)։

Հաջողությամբ են իրագործվում «Գյուղական վայրերում հեռախոսային ցանցի զարգացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշման պահանջները։ Հանրապետության կոլեկտիվ և պետական տնտեսություններում գործարկվել են ավտոմատ նոր հեռախոսակայաններ, որոնց զգալի մասը կոորդինատային սիստեմի սարքավորումներով է։ Կարելի է հիշատակել 200—1000 համարանոց ավտոմատ հեռախոսակայանները, որ վերջերս գործարկվել են Մխչյանում (Արտաշատ), Ղալաչայում (Նոյեմբերյան), Սարչապետում (Կալինինո), Հերհերում (Ազիզբեկով), Բաշքենդում (Կրասնոսելսկ) և Քարահունջում (Գորիս)։



Աներևակայելի չափերով մեծացել են նաև ռադիոհաղորդումների ընդգրկման մասշտաբները։ Տեխնիկական բազայի հետագա զարգացումը հնարավորություն ընձեռեց լարային ռադիոկապի բնագավառում հասնելու նոր կարևոր հաջողության՝ ստեղծվեց եռածրագիր լարային հաղորդումների սիստեմ։ Այժմ հանրապետությունում գործում է 56 ռադիոհանգույց, տեղադրված է 413 հազար ռադիոկետ, որից 96 հազարը՝ գյուղերում։ 147 հազար ռադիոկետ ապահովված է եռածրագիր հաղորդումներով։

Հեռագրային կապի նկատմամբ ժողովրդական տնտեսության և բնակչության օրավուր աճող պահանջմունքների բավարարման համար հանրապետության կապի աշխատողներն անընդհատ կատարելագործում են նրա տեխնիկական բազան, բարելավում սպասարկման կուլտուրան։ Այժմ մեզ մոտ հեռագրային կանալների ընդհանուր երկարությունը 79,5 հազար կանալոկիլոմետր է, հեռագրային կապերի թիվը՝ 908։ Հանրապետության բոլոր քաղաքներն ու շրջկենտրոնները մայրաքաղաքի և միմյանց, ինչպես նաև Մոսկվայի ու երկրի մի շարք այլ խոշորագույն կենտրոնների հետ հեռագրերը փոխանակում են ուղիղ միացման սիստեմով։ Իսկ այդ նշանակում է, որ հատուկ սարքավորումների միջոցով հեռագիրը հաղորդվում է պահանջված վայրի հեռագրատուն՝ վերջինիս համարի անմիջական հավաքմամբ։ Առանց հեռագրիչի գործող այս ուղիղ, անմիջական կապն անհամեմատ հուսալի է և ապահովում է մեծ արագություն։ Նույն սկզբունքով է կատարվում նաև հեռագրային ինֆորմացիայի փոխանակումը բաժանորդային կապից օգտվողների միջև։

Հանրապետությունում մայրենի լեզվով հեռագրային ինֆորմացիայի փոխանակում կազմակերպելու համար Երևանի հեռագրատանը տեղադրվել են ժամանակակից սարքավորումներ, որոնց բազայի վրա ստեղծվել է հեռագրային հատուկ ավտոմատ ցանց՝ հայատառ հեռագրերի համար։ Ներկայումս ներհանրապետական 11 բնակավայրեր (այդ թվում՝ Երևան, Լենինական, Կիրովական, Էջմիածին և այլն) ընդունում և հաղորդում են հայատառ հեռագրեր։ Հանրապետության բոլոր շրջաններում նման հնարավորություն ստեղծելու համար ներկայումս մեծ աշխատանք է կատարվում։

Զգալի գործ է արվել նաև ռադիո-հեռուստատեսային կապերի զարգացման բնագավառում։ Գործարկվել են նոր, հզոր ռադիո և հեռուստատեսային հաղորդիչ կայաններ և ռադիոռելեային գծեր։

1959 թ. կառուցված ուլտրակարճ հաղորդիչով հանրապետությունում փաստորեն նվաճվեցին հաղորդումների բոլոր ալիքները։ Ներկայումս հանրապետության ռադիոհաղորդիչները գործում են երկար, միջին, կարճ և ուլտրակարճ մետրալիքներով։ Հայերենից բացի, օրական 322 ժամ ընդհանուր տևողությամբ հաղորդումներ են տրվում ՍՍՀՄ և արտասահմանյան ժողովուրդների 30 լեզուներով։

1956 թվականի նոյեմբերին հայկական հեռուստատեսային ստուդիայից եթեր ուղարկվեց առաջին փորձնական հեռուստահաղորդումը։ Հեռուստատեսությունը մասսաների վրա ունեցած իր անմիջական և գործուն ազդեցությամբ ինֆորմացիայի միջոցների համակարգում բոլորովին նոր որակ էր, և նրա մուտքը նշանակալից երևույթ էր հանրապետության հասարակական-մշակութային կյանքում։

Հեռուստատեսության սկզբնավորումը դժվար, բայց և կարևոր քննություն էր մեր կապավորների համար։ Հեռուստատեսային կանոնավոր հաղորդումներն սկսվեցին 1957 թ. փետրվարից։ Հետագայում Ռուսթավի—Երևան ռադիոռելեային գծի գործարկմամբ հանրապետության բնակիչները հնարավորություն ստացան դիտելու հեռուստատեսային երկու ծրագիր՝ Երևանից և

Մոսկվայից։ Կենտրոնական հեռուստատեսության առաջին ծրագրից բացի, նոր ռադիոռելեային գիծը, որի շինարարության ընթացքում Հայաստանի լեռնային շրջաններում կառուցվեցին 100—180 մետր բարձրության հեռուստատեսային հինգ աշտարակներ, հայկական հեռուստատեսությունը միացրեց Եվրովիդենիեին և Ինտերվիդենիեին։

Այսօր հանրապետության բնակչության 97 տոկոսը դիտում է հանրապետական, 80 տոկոսը՝ կենտրոնական հեռուստատեսության առաջին ծրագրերը, 52 տոկոսը՝ հանրապետական երկրորդ ծրագիրը, 56,2 տոկոսը՝ ինչպես հայկական, այնպես էլ կենտրոնական հեռուստատեսության գունավոր ծրագրերը։ Բնակչությանը հեռուստատեսային հաղորդումների գոտու մեջ ներգրավելու առումով հանրապետությունը երկրորդն է Միության մեջ։

Զգալի հաջողությունների են հասել հանրապետության փոստային կապի աշխատողները։ Ամբողջությամբ մեքենայացված են միջշրջանային, ներշրջանային և քաղաքային փոստային երթուղիները, որոնց ընդհանուր երկարությունը 8.300 կմ է։ Հանրապետությունում գործում են 720 փոստային բաժանմունքներ, որոնցից 485-ը՝ գյուղական վայրերում։ 148 փոստային բաժանմունք բացվել է 1970 թ. հետո ընկած ժամանակահատվածում։ Փոստային երթուղիների մեքենայացման շնորհիվ ներկայումս տեղական մամուլի և կենտրոնական թերթերից «Պրավդա»-ի ու «Իզվեստիա»-ի առաքումը հանրապետության բոլոր շրջաններում կատարվում է նույն օրը։ Մեկ օրվա ընթացքում փոստային կապի մեր աշխատողները առաքում են 1,5 մլն թերթ, մոտ կես միլիոն նամակ և բացիկ, 8—10 հազար ծանրոց, 10 հազարից ավելի դրամական փոխադրություններ։ Փոստային կազմակերպությունները հաճախ են բնակչության հետ կազմակերպում հեռակա կոնֆերանսներ։ Ստացված արժեքավոր առաջարկների կիրառման բնագավառում առանձնապես լուրջ հաջողությունների է հասել Երևանի կենտրոնական փոստատունը՝ Հայաստանի կապի ամենահին ձեռնարկություններից մեկը, որն աշխատանքային նվաճումների իր հարուստ ավանդույթներով արժանի հեղինակություն է վայելում բնակչության շրջանում։ Միայն 1976—1977 թթ. այդ կոլեկտիվը չորս եռամսյակ անընդմեջ արժանացել է ՀՍՍՀ կապի մինիստրության և կապի աշխատողների հանրապետական կոմիտեի, իսկ անցյալ տարվա արդյունքներով՝ ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներին։

ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց բարձրացնել կապի բոլոր տեսակների որակը, ընդլայնել նրա ծառայությունները, շարունակել կապի միասնական ավտոմատացված ցանցի ստեղծումը, զգալիորեն բարձրացնել միջքաղաքային հեռախոսային կապի ավտոմատացման մակարդակը։

Ղեկավարվելով ՍՄԿԿ XXV համագումարի ծրագրային դրույթներով՝ Սովետական Հայաստանի կապի աշխատողներն ամեն ջանք գործադրում են լուծելու իրենց առջև դրված պատասխանատու խնդիրները, ավելի բարելավելու բնակչության սպասարկումը կապի միջոցներով։

Ընթացիկ հնգամյակի պլաններում զգալի տեղ է հատկացված կապի զարգացմանը։ Կշարունակվեն աշխատանքները կապի միասնական ավտոմատ ցանցի ստեղծման նպատակով։ Հանրապետության բոլոր քաղաքներն ու շրջկենտրոնները կունենան ավտոմատ միջքաղաքային կապ ոչ միայն մայրաքաղաքի, այլև միմյանց հետ։ Երևանն ավտոմատ միջքաղաքային կապ կունենա միութենական բոլոր հանրապետությունների մայրաքաղաքների և երկրի մի շարք խոշոր արդյունաբերական կենտրոնների հետ։ Նշված աշխատանքների իրականացման համար հանրապետության միջքաղաքային հեռախոսային կանալների երկարությունը կավելացվի մոտ 1,6 անգամ։ Սկսված է արդեն Երևան—Թբիլիսի մի նոր կաբելային գծի անցկացումը։ Նախատեսվում են սիմետրիկ կաբելային գծեր անցկացնել Հոկտեմբերյան—Թալին—Մարալիկ—Արթիկ—Լենինական և Մարտունի—Վարդենիս ուղղություններով։ Շահագործման կհանձնվի կապի խոշոր կառույցներից մեկը՝ Երևանի ավտոմատ միջքաղաքային հեռախոսային կայանը։

Երևանի նոր կառուցվող հեռագրային ավտոմատ կայանը՝ 1.800 հեռա-



գրակապի հզորությամբ, կարևոր նշանակություն կունենա ուղիղ միացման և բաժանորդային կապերի ընդլայնման, ինչպես նաև տվյալների հաղորդման համապետական սիստեմի առաջին հերթի ներդրման համար. վերջինս կապահովի տեղերից բազմաբնույթ ինֆորմացիայի արագ հաղորդումը և դրա օպերատիվ մշակումը կառավարման ավտոմատ սիստեմի միջոցով։ Երևանում կկառուցվի հեռագրային նոր կենտրոնացված տիպի կոմուտացիոն կայան, որը կգործի էլեկտրոնային հաշվիչ մեքենաների բազայի վրա և որով լրիվ կավտոմատացվեն տրանզիտ հեռագրաինֆորմացիոն հաղորդումների մշակումն ու փոխանակումը հանրապետությունում։ Ավտոմատ կայանը կապահովի աշխատատար պրոցեսների մեծ արագություն։ Լուսահեռագրով կընդունվեն նաև կենտրոնական թերթերի էջաշարվածքները։

Ընթացիկ հնգամյակում հանրապետության քաղաքային հեռախոսային ցանցը կընդլայնվի 100 հազար համարով. 36 հազար նոր համար կստանան միայն երևանցիները։ Մայրաքաղաքում շահագործման կհանձնվեն 25 ինդեքսով (26 կոմիսարների շրջան), 35 ինդեքսով (Շահումյանի շրջան) և 55 ինդեքսով (Օրջոնիկիձեի շրջան) ավտոմատ հեռախոսակայանները։ Ինը հազարական նոր համարներ կստանան լենինականցիներն ու կիրովականցիները, չորս հազար համարանոց հեռախոսային կայաններ կկառուցվեն Արտաշատում, Աշտարակում և Գորիսում, երկու հազար համարանոց՝ Էջմիածնում, Շամշադինում, Ղափանում և այլն։

Ուրախալի է նշել, որ հիշատակված կայանների զգալի մասը կունենա կոորդինատային սիստեմի ավտոմատ սարքավորումներ։ Հանրապետության գյուղական հեռախոսային ցանցը կհամալրվի 20 հազար համարով։ Առաջիկայում հազար համարանոց նոր ավտոմատ հեռախոսակայաններ կկառուցվեն Արզականում (Հրազդանի շրջան) և Վարդենիկում (Մարտունու շրջան), 500 համարանոց՝ Շահնազարում (Կալինինոյի շրջան), Ջրաշենում (Սպիտակի շրջան) և այլն։

Երկծրագիր հեռուստատեսային հաղորդումների կայուն ընդունման գոտու ընդլայնման նպատակով ընթացիկ հնգամյակում կկատարվեն զգալի աշխատանքներ։ Երևանի հեռուստատեսային կենտրոնի վերակառուցումը նախատեսվում է սև-սպիտակ և գունավոր քառածրագիր հեռուստատեսային, ինչպես նաև ուլտրակարճ ալիքներով քառածրագիր ռադիոհաղորդումների համար։ Կգործարկվի Լենհանքեր—Բերդ ռադիոռելեային գիծը, որով կընդլայնվի Իջևանի շրջանում առաջին հանրապետական ծրագրի ընդունման գոտին, կկայունացվի Իջևանի և Շամշադինի շրջաններում կենտրոնական հեռուստատեսության առաջին ծրագրով տրվող հաղորդումների ընդունումը։ Նշված ռադիոռելեային գիծը մեծ չափով կբարելավի նաև հայկական և կենտրոնական հեռուստատեսությունների առաջին ծրագրերի ընդունման որակը Նոյեմբերյանի շրջանում։ Կգործարկվի Պուշկինյան լեռնանցք—Ջկալովո ռադիոռելեային գիծը, որը հնարավորություն կընձեռի բարելավելու հայկական հեռուստատեսության առաջին ծրագրով տրվող հաղորդումների ընդունման որակը Գուգարքի, Թումանյանի, Կալինինոյի և Ստեփանավանի շրջանների բնակավայրերի մի զգալի մասում։ Բացի այդ, նշված վայրերի բնակիչները դրանով հնարավորություն կստանան դիտելու կենտրոնական հեռուստատեսության առաջին ծրագրով տրվող հաղորդումները։

Լենինականում տեղադրվող 108 մ բարձրությամբ հեռուստատեսային նոր աշտարակը և Երևան—Լենինական ռադիոռելեային գծի վերակառուցումը հնարավորություն կընձեռեն ընդլայնելու հայկական և կենտրոնական հեռուստատեսության առաջին ծրագրերի հաղորդիչների գոտիները և, միաժամանակ, բարելավելու նշված ծրագրերով տրվող հաղորդումների ընդունման որակը Շիրակում։ Կապի համակարգում հնգամյակի խոշոր կառույցներից մեկը կլինի «Օրբիտա—2» տիեզերական կապի ընդունող-հաղորդող կայանը Երևանում։ Նշված կայանը շահագործման կհանձնվի Հոկտեմբերյան հեղափոխության 60-ամյակի օրը։ Ընթացիկ տարում կգործարկվի ևս մի կարևոր կառույց՝ Երևանի նոր հեռուստատեսային աշտարակը, որն իր բարձրությամբ (308,5 մ)

4-րդն է Սովետական Միությունում։ «Օրբիտա—2»-ը և հեռուստատեսային նոր աշտարակը Երևանի ու Արարատյան դաշտի բնակիչներին կապահովեն գունավոր պատկերմամբ հեռուստատեսային ևս մեկ ծրագրով։ Քառածրագիր հաղորդումներից բացի, նշված կառույցները կտան ևս 24 միջքաղաքային հեռախոսային կանալներ Մոսկվայի հետ և Մոսկվայից հաղորդվող ռադիոծրագրերի պահեստային տրակտ։

Նշված միջոցառումների կենսագործմամբ, ինչպես նաև 1976—80 թթ. ընթացքում մի շարք այլ ռադիոռելեային գծերի և ռադիոհեռուստատեսային վերահաղորդիչ կայանների գործարկմամբ ընթացիկ հնգամյակի վերջում հանրապետության բնակչության 99 տոկոսը հնարավորություն կունենա դիտելու հայկական հեռուստատեսության առաջին ծրագրով տրվող հաղորդումները, 68,6 տոկոսը՝ հայկական և կենտրոնական հեռուստատեսությունների գունավոր հաղորդումները, 94 տոկոսը՝ կենտրոնական հեռուստատեսության առաջին ծրագրով տրվող հաղորդումները։

Հնգամյակի վերջում հանրապետության բնակավայրերի ռադիոֆիկացումը ամբողջությամբ կավարտվի։ Զարգացման մեծ հեռանկարներ են նախատեսվում հանրապետության փոստային կապի համար։ Կբացվեն 100 փոստային նոր բաժանմունքներ, որոնցից 60-ը՝ գյուղական վայրերում։ Մամուլի և թղթակցությունների մշակման, առաքման, հասցեատերերին և բաժանորդներին ժամանակին հանձնելու գործն արագացնելու համար հանրապետությունում կոմպլեքսային մեքենայացման կենթարկվեն 5 խոշոր փոստային ձեռնարկություններ, նամակատարի առաքման 600 տեղամասեր։ Շահագործման կհանձնվեն Երևանի կենտրոնական փոստատունը, Կիրովական և Լենինական քաղաքների երկաթուղամերձ փոստատները։

Կապը անփոխարինելի դեր է խաղում ժողովրդական տնտեսության բոլոր օղակների նորմալ գործունեության ասպարեզում։ Այն նյութական արժեքներ չի ստեղծում, սակայն նյութական արտադրության ցանկացած բնագավառի գործունեությունն անկարելի է մեր օրերում պատկերացնել առանց կապի ծառայության։ Առանձնապես մեծ է կապի դերը սոցիալիստական արտադրության համաչափ կազմակերպման և դրա պլանային ղեկավարումն իրականացնելու բնագավառում։ Իսկ այդ գործոնները, ինչպես հայտնի է, ավելի ու ավելի մեծ կարևորություն են ստանում սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման արդի փուլում։

Մեր կապավորները լի են վճռականությամբ կուսակցության և կառավարության կողմից իրենց առջև դրված խնդիրներն այսուհետ ևս պատվով կատարելու, երկրի ժողովրդական տնտեսության զարգացման մեջ իրենց արժանի լուման ներդնելու համար։ Տասներորդ հնգամյակի առաջին տարվա և ընթացիկ տարվա առաջին եռամսյակի նրանց աշխատանքի գոհացուցիչ արդյունքները դրա լավագույն ապացույցն են։ Կապավորները լայնորեն ծավալել են սոցիալիստական մրցություն՝ նորանոր նվաճումներով դիմավորելու մեծ Հոկտեմբերի հոբելյանը։

---

# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ-ՎԵՐԱԿԵՐՏԻՉ ՄԵԾ ՈՒԺԸ

**Շ. ՍԱՆԱԿՈԵՎ**
Պատմական գիտությունների դոկտոր

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո համաշխարհային բուրժուազիան միանգամից սկսեց աղաղակել «բռնության» ու «զավթման» մասին։ Բուրժուազիան ու նրա բազմաթիվ կողմնակիցները հեղափոխության հաղթանակը հանգեցնում էին լոկ բոլշևիկների «բռնի» գործողություններին, որոնք, իբր, իշխանությունն էլ իրենց ձեռքում պահում են միայն բռնությամբ։ Հոկտեմբերյան հեղափոխությանը տված իրենց այդպիսի գնահատականը մեր հակառակորդները բացատրում էին բավական պրիմիտիվ կերպով՝ ցարական Ռուսաստանի առանձնահատկություններով և ամենից առաջ նրա արտակարգ հետամնացությամբ. այդ հիման վրա հետևություն էին անում, թե սովետական իշխանությունը կկարողանա հաղթանակել միայն Ռուսաստանյան կայսրության սահմաններում։

«Բռնության» և «զավթման» վերաբերյալ խոսակցությունները նրանց անհրաժեշտ էին, որպեսզի նսեմացնեն XX դարի մեծագույն իրադարձության նշանակությունը, այն ներկայացնեն իբրև մի պատահական երևույթ, այսպես ասած, անոմալիա մարդկային հասարակության զարգացման մեջ։

Պատմության փորձն ամբողջապես հերքեց այդ բոլոր ու դրանց նման հերյուրանքները։ Կարճ ժամանակամիջոցում բուրժուազիան ստիպված եղավ համոզվելու, որ Հոկտեմբերը Եվրոպային և աշխարհին տվեց նոր, սոցիալիստական կարգ, որ Հոկտեմբերի գաղափարները, գիտական կոմունիզմի գաղափարները ո՛չ միայն դուրս եկան Ռուսաստանյան կայսրության սահմաններից, այլև նյութական բազա ձեռք բերեցին մայրցամաքի մյուս երկրներում։ Պրոլետարական հեղափոխությունը Հունգարիայում, սովետական իշխանության հաստատումը Սլովակիայում, Բավարիայում (թեկուզ նույնիսկ կարճատև) վկայում էին, որ սովետական հեղափոխությունը ո՛չ միայն նոր կարգ հաստատեց Ռուսաստանում, այլև մեծագույն ներգործություն ունեցավ եվրոպական ու համաշխարհային զարգացման ողջ ընթացքի վրա։

Խոսելով Հունգարիայում կատարված պրոլետարական հեղափոխության նշանակության մասին, Վ. Ի. Լենինը 1919 թվականին ՌԿ(բ)Կ VIII համագումարում շեշտեց. «Եթե մինչև այժմ սովետական իշխանությունը հաղթում էր միայն ներսում, նախկին Ռուսաստանի կայսրության կազմում մտած ժողովուրդների մեջ, եթե մինչև այժմ կարճատես մարդիկ, որոնք առանձնապես դժվար են բաժանվում հնապաշտությունից, մտքի հին սովորություններից (թեկուզ և նրանք սոցիալիստների լագերին պատկանեն), կարող էին կարծել, որ միայն Ռուսաստանի առանձնահատկություններն առաջ բերին այս անսպասելի շրջադարձը դեպի պրոլետարական սովետական դեմոկրատիան, որ այս դեմոկրատիայի առանձնահատկություններում, ինչպես ծուռ հայելում, գուցե,

ցարական Ռուսաստանի հին առանձնահատկություններն են արտացոլվում,— եթե այսպիսի կարծիքը դեռ կարող էր դիմանալ, ապա այժմ դա հիմնովին խորտակված է» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 266)։

Հոկտեմբերյան հեղափոխությունը նախապատրաստվել էր պատմական զարգացման ողջ ընթացքով, այն մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում դասակարգային պայքարի օրինաչափ արդյունքն էր։ Այդ բանը ցույց տվեց ու ապացուցեց և հետհոկտեմբերյան ժամանակաշրջանում աշխարհում ծավալված իրադարձությունների ողջ ընթացքը։

Այժմ մեր թշնամիներից ոչ ոք չի համարձակվում ժխտել սովետական հեղափոխության վերափոխիչ ու կենսահաստատ մեծ ուժը։ Սոցիալիստական հեղափոխությունների հաղթանակը Եվրոպայի, Ասիայի և Լատինական Ամերիկայի մի շարք երկրներում, իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը և աֆրո-ասիական բազմաթիվ երիտասարդ պետությունների կողմից սոցիալիստական կողմնորոշման ընտրությունը, միջազգային բանվորական և կոմունիստական շարժման թափը՝ մի կողմից, և, մյուս կողմից՝ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա սրումը, իմպերիալիզմի բոլոր հակասությունների խորացումը, այս ամենն աշխարհի հեղափոխական նորացման՝ հին հասարակական-տնտեսական ֆորմացիան նոր, սոցիալիստական ֆորմացիայով փոխարինելու պատմական պրոցեսի կարևորագույն բաղադրամասերն են։

Ռեալ սոցիալիզմը փոխել է արդի աշխարհի ողջ դեմքը։ Նա ոչ միայն վերափոխեց կյանքը ՍՍՀՄ-ում և սոցիալիստական մյուս պետություններում, այլև մեծագույն ազդեցություն գործեց ու շարունակում է գործել աշխարհի ոչ սոցիալիստական մասի ժողովուրդների ճակատագրի, բոլոր երկրների ներքին և արտաքին քաղաքականության վրա։

Համաշխարհային բուրժուազիան և նրա հենարանը բանվորական շարժման մեջ՝ սոցիալ-ռեֆորմիզմն արդեն ի վիճակի չեն սոցիալիզմին հակադրել ոչինչ, բացի զրպարտությունից ու կեղծարարությունից։ Նրանք միայն հարմարվում են իրադրությանը, ստիպված են պաշտպանվել համաշխարհային սոցիալիզմի աճող ազդեցությունից, հենց այդ պատճառով էլ փորձում են ամրացնել իրենց դիրքերը, դատողություններ են անում, իբր, Արևմուտքում գոյություն ունեցող «ժողովրդական կապիտալիզմի», «համընդհանուր բարօրության հասարակության» մասին։

Գիտական կոմունիզմի հակառակորդների փիլիսոփայության աղքատությունը դրսևորվում է ամենից առաջ այն բանում, որ բոլոր վերոհիշյալ «տեսությունները», որ նրանք առաջադրում են որպես ռեալ սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի ալտերնատիվ, չդիմացան ժամանակի փորձությանը։ Այդ տեսությունները թաղեց ինքը՝ կյանքը, հասարակական զարգացման պրակտիկան։ Այժմ բուրժուական գաղափարախոսներից ոչ ոք առանց դառնության չի էլ հիշում դրանց մասին։ Ճիշտ է, սոցիալ-ռեֆորմիստները դարձյալ փորձում են մշակել «դեմոկրատական սոցիալիզմի» տեսության մի նորացված տարբերակ, դրանով իսկ խոստովանելով այդ հարցի վերաբերյալ բոլոր նախկին «գիտական» հետազոտությունների լիակատար սնանկությունը։

Ինչո՞ւ են նրանք նորից անդրադառնում այդ թեմային։ Այս հարցին պատասխանելու համար անօգտակար չի լինի, եթե ուշադրություն դարձնենք այն վիճաբանություններին, որոնք վերջին տարիներին ծավալվում են արևմտաեվրոպական սոցիալ-դեմոկրատական շարժման մեջ։ Ի տարբերություն անցյալի, այդ վիճաբանությունների մասնակիցների մեծ մասը խոստովանում է, որ կապիտալիզմը հեռանկար չունի, որ հին աշխարհի ողջ սիստեմը խոր ճգնաժամ է ապրում։ Այսպես, օրինակ, շվեդական սոցիալ-դեմոկրատական կուսակցության պարագլուխ Ու. Պալմեն հայտարարում է. «Կապիտալիստական սիստեմի ճգնաժամը փաստ է։ Շատերն ուղղակի մերժում են կապիտալիզմը բարոյական ու գաղափարական դիրքերից։ Շատերին սարսափ է պատել։ Գոյություն ունի մի վտանգ, թե սարսափը կարող է հասցնել ֆաշիզմի նման ինչ-որ մի բանի զարգացման»։ Շվեդիայի նախկին պրեմիեր-մինիստրը հաստատում է, որ «կապիտալիզմն ի վիճակի չէ հաղթահարելու ծագած պրոբլեմները»։



Նույն այդ ոգով է արտահայտվում նաև ավստրիական սոցիալ-դեմոկրատների պարագլուխ, Ավստրիայի կանցլեր Բ. Կրայսկին. «Մարդիկ սկսել են կասկածել մեր տնտեսական սիստեմի գերազանցության վրա, և մենք պետք է պատասխան տանք նրանց, ներշնչենք վստահության նոր, ըստ որում առաջադիմական, այլ ոչ թե պահպանողական զգացում»։

Սոցիալ-դեմոկրատական շարժման պարագլուխների տագնապը, անկասկած, բացատրվում է այն բանով, որ արևմտյան երկրների կառավարող դասակարգերի հետ հավասար նրանք պատասխանատվություն են կրում զարգացած կապիտալիստական պետություններում ստեղծված դրության համար։ Չէ՞ որ արևմտաեվրոպական մի շարք երկրներում տասնյակ տարիներ իշխանության գլուխ կանգնած են եղել և այժմ էլ կանգնած են սոցիալ-դեմոկրատական կառավարությունները, որոնք չեն թաքցնում այն, որ սոցիալ-դեմոկրատիան «համակեցության մեջ է կապիտալիզմի հետ», որ սոցիալ-դեմոկրատները, ինչպես իր ժամանակին ֆրանսիական սոցիալիստների պարագլուխ Լեոն Բլյումն էր ասում, «ազնիվ կառավարողներ» են կապիտալիզմի երկրներում։ Ուստի, կապիտալիստական սիստեմի ճգնաժամը վկայում է ոչ միայն խոշոր կապիտալի գաղափարախոսության և քաղաքականության սնանկության, այլ միաժամանակ և ամբողջ սոցիալ-ռեֆորմիզմի, նրա գաղափարախոսության ու պրակտիկայի սնանկության մասին։

Եվ իրոք, սոցիալ-դեմոկրատական շարժումը, որը ծագել է ավելի քան հարյուր տարի սրանից առաջ, մինչև այժմ գործնականում չի ստեղծել սոցիալիզմի իր սեփական մոդելը։ Իսկ ինչ վերաբերում է տեսությանը, ապա խոսակցություններն այսպես կոչված «դեմոկրատական սոցիալիզմի» մասին ընդհանուր դատողություններից և վերացական վիճաբանություններից հեռու չեն գնում։ Սոցիալ-դեմոկրատական տեսաբաններից ոչ ոք չի կարող կոնկրետ ասել, թե իրենից ինչ է ներկայացնում այդ «դեմոկրատական սոցիալիզմը»։ Ըստ էության, սոցիալ-ռեֆորմիզմի տեսական որոնումները հիմնականում հանգում են գիտական կոմունիզմի տեսությանն ու պրակտիկային անդրադառնալու փորձերին, և ամենից առաջ ռեալ սոցիալիզմի սկզբունքների «քննադատության» օգնությամբ։ Իսկ այն պնդումները, թե «դեմոկրատական սոցիալիզմը» դա «լրիվ չափով իրականացվող դեմոկրատիա» է, որ «այդ սոցիալիզմի կենտրոնում դրվում են յուրաքանչյուր առանձին մարդու սոցիալական պայմանները» և այլն, ոչ մի պատկերացում չեն տալիս սոցիալ-դեմոկրատական ըմբռնմամբ սոցիալիզմի մոդելի մասին։ Պատահական չէ, որ այդ հարցի շուրջ ծավալված վիճաբանությունների ընթացքում նույն Բ. Կրայսկին ստիպված էր խոստովանել, որ «սոցիալ-դեմոկրատական երկու ուղղություններն էլ՝ ռեֆորմիստականը և հեղափոխականը, ընկել են փակուղու մեջ»։

Սոցիալ-դեմոկրատական շարժման ավելի քան հարյուրամյա պատմության նման արդյունքը միանգամայն օրինաչափ է։ Եվ իրոք, սոցիալ-ռեֆորմիստներն ու ռևիզիոնիստները բանվորական շարժման մեջ սիրով շաղակրատում են ապագա հասարակության այսպես կոչված «նոր մոդելների» մասին, վարժություններ անում զանազան «տեսական» կառուցումներում։ Սակայն «դեմոկրատական սոցիալիզմի» նրանց մշակած բոլոր մոդելներն էր բուրժուական հասարակության շրջանակներից դուրս չեն գալիս։ Մի կողմից նրանք հավակնում են մի այնպիսի հասարակություն ունենալ, որը դասակարգերի բաժանված չլինի և «կողմնորոշված լինի դեպի հավասարությունը, եղբայրությունն ու արդարությունը», մյուս կողմից՝ ինչպես կրակից՝ վախենում են ռեալ սոցիալիզմից, որը հենց հասարակության վերընթաց զարգացման օբյեկտիվորեն օրինաչափ փուլն է։ Քանի որ պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը, ինչպիսին է կապիտալիզմի զարգացման արդի փուլը, ինչպես Վ. Ի. Լենինն էր մատնանշում, «սոցիալիզմի նյութական լիակատար նախապատրաստումն է, նրա նախադուռն է, պատմական սանդուղքի այն աստիճանն է, որի (աստիճանի) ու սոցիալիզմ կոչվող աստիճանի միջև ոչ մի միջանկյալ աստիճան չկա» (Երկեր, հ. 25, էջ 460)։

Սոցիալիզմի բոլոր գույների հակառակորդները շարունակում են համառ

ջանքեր գործադրել նաև նրա համար, որ խարխլեն միջազգային կոմունիստական և բանվորական շարժման միասնությունը, փորձելով բանվոր դասակարգի տարբեր ջոկատները հակադրել միմյանց, օգտագործել այս կամ այն հարցում նրանց դիրքորոշումների մեջ եղած նվազագույն տարբերությունները: Բուրժուազիան ու նրա գաղափարական պաշտպանները բուրժուական նացիոնալիզմն ու մեծապետական շովինիզմը վաղուց պայքարի գործիք են դարձրել ընդդեմ աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխության: Կոմունիստական և բանվորական կուսակցությունները հաշվի են առնում այդ և հետևողականորեն հոգում ինչպես ազգային, այնպես էլ միջազգային մասշտաբներով իրենց շարքերի համախմբվածությունն ամրապնդելու համար:

Խաղաղության և սոցիալիզմի համար մղվող պայքարի կոլեկտիվ փորձը ցեմենտում է մարքս-լենինյան կուսակցությունների դաշինքը, հարստացնում միջազգային կոմունիստական շարժման տեսությունն ու պրակտիկան: Վ. Ի. Լենինը շեշտում էր, որ միջազգային հեղափոխական շարժումը հավասարաչափ ու միատեսակ ձևերով չի ընթանում և չի կարող ընթանալ տարբեր երկրներում: «Բոլոր հնարավորությունների լիովին և բազմակողմանի օգտագործումը...,— նշում էր նա,— կազմվում է միայն որպես տարբեր երկրների բանվորների դասակարգային պայքարի արդյունք: Յուրաքանչյուր երկիր մտցնում է իր արժեքավոր, յուրատեսակ գծերն ընդհանուր հոսանքի մեջ, բայց յուրաքանչյուր առանձին երկրում շարժումը տառապում է այս կամ այն միակողմանիությամբ, առանձին սոցիալիստական կուսակցությունների այս կամ այն տեսական կամ գործնական թերություններով» (Երկեր, հ. 15, էջ 222): Լենինյան այս դրույթը մեր ժամանակում ևս ամենևին չի կորցրել իր հրատապությունը:

Բուրժուազիան ու նրա սոցիալ-ռեֆորմիստական կամակատարներն անզոր գտնվեցին ռեալ սոցիալիզմի տեսությանն ու պրակտիկային հակադրել ինչ-որ մի էական բան, առաջադրել գաղափարներ, որոնք համապատասխանեն ժողովուրդների շահերին ու իղձերին, մարդկային հասարակության վերընթաց առաջադիմական շարժմանը: Միայն Հոկտեմբերը և նրա ծնունդ հանդիսացող սոցիալիստական կարգը մարդկության առջև բացեցին իսկական պատմական հեռանկարը, պայծառ ապագայի ճանապարհը: Ինչպես նշվում է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, «Մեծ Հոկտեմբերը բացեց նոր դարաշրջանը՝ կապիտալիզմից սոցիալիզմին մարդկության անցման դարաշրջանը, «իմպերիալիզմից ժողովուրդներին ազատագրելու, ժողովուրդների միջև պատերազմները դադարեցնելու, կապիտալի տիրապետությունը տապալելու համար, սոցիալիզմի համար» մղվող պայքարի դարաշրջանը»:

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մենք ստեղծել ենք նոր հասարակարգ, մի այնպիսի հասարակարգ, որի նմանը մարդկությունը դեռ չէր իմացել: Դա անճգնաժամ, մշտապես աճող էկոնոմիկայի, սոցիալիստական հասուն հարաբերությունների, իսկական ազատության հասարակարգ է: Դա մի հասարակարգ է, որտեղ տիրապետում է գիտական մատերիալիստական աշխարհայացքը: Դա մի հասարակարգ է, որն անսասանորեն վստահ է ապագայի, կոմունիստական լուսավոր հեռանկարներին: Մեր առջև բաց են հետագա համակողմանի առաջադիմության անծայրածիր հեռաստանները» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 130—131):

Տարեցտարի ավելի ու ավելի շատ է բացահայտվում սովետական հեղափոխության վեհությունը, ավելի ու ավելի ակնառու են դառնում սոցիալիստական կարգի առավելությունները: Այդ վեհությունը ո՛չ միայն նրանում է, որ մեր երկիրը կարողացավ փրկվել այն աղետից, որ նրա համար պատրաստել էին շահագործող դասակարգերը երկրի ներսում և դրսում: Կանգնելով իսկական անկախ զարգացման ուղու վրա, մեր հայրենիքը մարդկության պատմության մեջ առաջինն ազատվեց ժողովուրդների ամենակատաղի թշնամիների՝ կապիտալիզմի ու իմպերիալիզմի տիրապետությունից: Մեծ Հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ սովետական ժողովուրդն ամբողջ երկրագնդի վրա առաջինը ճա-



շակեց իսկական ազատ աշխատանքի պտուղները, աշխատանք, որը նրան դարձրեց իր երկրի տերը:

Միևնույն ժամանակ Հոկտեմբերը, սկիզբ դնելով ժողովուրդների ազատագրմանը իմպերիալիզմի լծից, ավելի բարենպաստ պայմաններ ստեղծեց կապիտալիստական աշխարհում հանուն իրենց տնտեսական, սոցիալական և քաղաքական իրավունքների, հանուն իրենց ազատության աշխատավորական զանգվածների պայքարի, նպաստեց ազգային-ազատագրական շարժումների վերելքին, որոնք հանգեցրին գաղութատիրության ողջ սիստեմի փլուզմանը: Հոկտեմբերի հաղթանակը զգալիորեն հեշտացրեց համապարփակ, համամարդկային խնդիրների լուծումը:

Ռեալ սոցիալիզմի ազդեցության տակ Արևմուտքի երկրներում տեղի ունեցած և տեղի ունեցող փոփոխությունները երբեմն դժվար է թվաբանական հաշվարկի ենթարկել. բայց դրա հետ մեկտեղ դրանք շարունակ, բառացիորեն ամեն օր երևում են կապիտալիստական պետությունների հասարակական կյանքի բոլոր ոլորտներում:

Բայց սոցիալիզմի առաջին երկրի մի սխրանքը, անկասկած, պատկանում է այն դարակազմիկ իրադարձությունների թվին, որոնք բազում տարիներ առաջ որոշել են համաշխարհային զարգացումը. Սովետական Միությունը փակեց ֆաշիզմի ուղին, որը 30-ական թվականներին, կարծես, ամուր հիմնավորվել էր կապիտալիզմի մի շարք երկրներում, ստրկացրել Արևմտյան Եվրոպայի ժողովուրդներին, վերացրել անգամ բուրժուական դեմոկրատիան բոլոր օկուպացված երկրներում: Մեծ Հոկտեմբերի երկիրը եղավ այն ուժը, որը համաշխարհային քաղաքակրթության բուն գոյությանն իսկ սպառնացող ֆաշիզմի հետ ունեցած մեծագույն գոտեմարտում թաղեց նացիստական Գերմանիայի կողմից աշխարհի նվաճման բոլոր խելացնոր պլանները: Դա է մարդկությանը, եվրոպական և համաշխարհային քաղաքականությանը Լենինի երկրի մատուցած մեծագույն ծառայություններից մեկը:

Ֆաշիստական ռեակցիայի ուժերի նկատմամբ հաղթանակը հնարավոր եղավ, որովհետև սոցիալիզմը, մեր երկիրը վերածելով համաշխարհային առաջատար տերություններից մեկի, այն դարձրեց համընդհանուր խաղաղության ու առաջադիմության պատվարը: Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների օրինակը ապացուցում է, որ արտադրության սոցիալիստական եղանակը, սոցիալիստական արտադրահարաբերությունները հանրային արտադրության ամենալավագույն, ամենաառաջադիմական ձևն են, որ պատմական հեռանկարում այդ ձևը պետք է տիրապետող դառնա ամբողջ աշխարհում: Եվ իրոք, 1913 թվականին նախահեղափոխական Ռուսաստանին բաժին էր ընկնում համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 4 տոկոսից քիչ ավելին միայն: Իսկ ներկայումս ՍՍՀՄ-ն արտադրում է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի $^{1}/_{5}$-ը, իսկ բոլոր սոցիալիստական երկրները՝ ավելի քան 40 տոկոսը: Նրանք արդեն թողարկում են տնտեսապես զարգացած կապիտալիստական երկրների արդյունաբերական արտադրանքի ավելի քան $^{3}/_{4}$-ը: Մինչդեռ «ելակետային տվյալները»՝ տնտեսական այն ժառանգությունը, որ ստացել էր նոր կարգը, գրեթե բոլոր սոցիալիստական երկրներում անչափ չնչին են եղել:

Մինչև վերջերս Արևմուտքում սիրում էին «տնտեսական հրաշք» պիտակը կպցնել մերթ մեկ, մերթ մի այլ երկրի: Իսկ եթե խոսելու լինենք տնտեսական հրաշքի մասին, ապա այն իրոք կատարվել է ՍՍՀՄ-ում և սոցիալիզմի եղբայրական երկրներում:

Կապիտալիզմն ի՞նչ կարող է հակադրել սոցիալիստական երկրների կայուն, պլանաչափ, ճգնաժամեր ու անկումներ չիմացող տնտեսական զարգացմանը: Բավական է բերենք ընդամենը մի քանի թիվ միայն, որպեսզի համոզվենք, որ սոցիալիզմի հետ տնտեսական մրցության ընթացքում կապիտալիզմը շարունակ կորցնում է տեմպը: Եթե 1975 թվականին սոցիալիստական երկրներում արդյունաբերության համախառն արտադրանքը 1950 թվականի համեմատությամբ աճեց 10,1 անգամ, ապա զարգացած կապիտալիստական եր-

կրներում արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելացավ միայն 3,1 անգամ։

Բայց հարցը միայն տնտեսական զարգացման տեմպերի մեջ չէ։ Արտադրության սոցիալիստական եղանակը և սոցիալիստական արտադրահարաբերությունները եղբայրական երկրների ժողովուրդներին լրիվ ազատել են կապիտալիստական հասարակության մշտական ուղեկիցներ հանդիսացող ցնցումներից՝ տնտեսական, ֆինանսական ճգնաժամերից, գործազրկությունից, ինֆլյացիայից և այլն։ Իսկ դրանք այն գործոններն են, որոնք ամենաանմիջական կերպով որոշում են աշխատավոր զանգվածների դրությունը, նրանց սոցիալական կենսապայմանները, նրանց դեմոկրատական իրավունքները։

Սոցիալիզմն անհրաժեշտ նախադրյալներ է ստեղծում անհատի համակողմանի ներդաշնակ զարգացման համար։ Սոցիալիստական երկրների ժողովուրդների համար այն ապահովում է իսկական ազատություն, իսկական անկախություն և իրավահավասարություն։ Ընդսմին, սոցիալիստական դեմոկրատիան արմատապես տարբերվում է բուրժուական դեմոկրատիայից, որը քողարկվում է ֆիլիստերական ֆրազներով։ Սոցիալիստական դեմոկրատիան հենվում է կայուն տնտեսական բազայի վրա և չի կարող ծառայել որպես քաղաքական սպեկուլյացիաների ու դեմագոգիայի օբյեկտ, ինչպես այդ լինում է բուրժուական հասարակարգում։ Ոչ մեկի համար գաղտնիք չէ, որ կապիտալիստական երկրների կառավարող դասակարգերը պառլամենտարիզմի ու դեմոկրատական ազատությունների հասկացություններով պարծենում են գլխավորապես նախընտրական կամպանիաների ժամանակ, երբ սիրաշահում են «հասարակ ժողովրդին» այն դեպքում, երբ իրականում քաղաքական ազատություններն այնտեղ արդեն վաղուց են դարձել ֆիկցիա, որով քողարկում են բուրժուազիայի դասակարգային տիրապետությունը։ Հարկավոր է պատշաճը հատուցել. այդ բոլոր նախընտրական կամպանիաների ցուցադրական կողմը մշակված է մեծ վարպետությամբ, դրանք ստանում են բազմախոստում ռեկլամի բնույթ և անգամ կազմակերպվում են ռեկլամի մեթոդների օգնությամբ։

Սքողելով արևմտյան դեմոկրատիայի կեղծիքն ու երկերեսանիությունը, հին աշխարհի գաղափարախոսներն ու քաղաքագետները շարունակ փորձում են զրպարտել, կեղծել սոցիալիստական դեմոկրատիան, խեղաթյուրել նրա իսկական մարդասիրական բնույթը։ Ստի ու կեղծարարության այդպիսի կամպանիաներից մեկն է վերջին ժամանակներս Արևմուտքում սկսված պրովոկացիոն բանսարկությունը սոցիալիստական երկրներում «մարդու իրավունքների» շուրջը։ Ընդսմին հարկավոր է նկատի ունենալ, որ իրենք՝ պրոպագանդիստական այդ ձեռնարկման կազմակերպիչներն անգամ, ամենայն հավանականությամբ, գիտակցում են, որ այդ ձեռնարկումը հենց սկզբից էլ խարսխված է զրպարտության ու խաբեության վրա։ Նրանք այնքան քաջատեղյակ են սոցիալիստական երկրների գործերի վիճակին, որ հազիվ թե չիմանան, թե ինչպիսի իրավունքներ ու դեմոկրատական ազատություններ են վայելում մեզ մոտ աշխատավորական զանգվածները, թե այդ բնագավառում ինչպիսի վիթխարի առավելություններ ունի սոցիալիստական կարգը՝ բուրժուականի հանդեպ։ Միանգամայն այլ է նման պրոպագանդիստական կամպանիաների իսկական իմաստը, որոնք, ըստ էության, այլ բան չեն, քան գաղափարական դիվերսիաներ սոցիալիստական պետությունների դեմ։

Բանն այն է, որ կապիտալիստական սիստեմի սրվող սոցիալ-տնտեսական և քաղաքական ճգնաժամի պայմաններում ժողովրդական զանգվածների առջև ավելի ու ավելի շատ է բացահայտվում բուրժուական դեմոկրատիայի և մանրբուրժուական դեմոկրատիզմի պատրանքայնությունը։ Առանձնապես ցայտուն երևան է գալիս «ազատության» և «հավասարության», դեմոկրատական իրավունքների մասին Արևմուտքի կառավարող շրջանների տարբեր կարգի դեկլարացիաների կեղծիքը։ Մերկացնելով բուրժուական դեմոկրատիայի փարիսեցիությունը, Վ. Ի. Լենինը մատնանշում էր. «Մարքսն ամենից ավելի ծաղրել է ազատության և հավասարության մասին ասվող դատարկ խոսքերը, երբ դրանք քողարկում են բանվորների՝ սովից մեռնելու ազատությունը, կամ իր



բանվորական ուժը վաճառող մարդու հավասարությունն այն բուրժուայի հետ, որն իբր թե ազատ շուկայում ազատ ու իրավահավասար կերպով գնում է նրա աշխատանքը և այլն» (Երկեր, հ. 29, էջ 235)։

Պետք չէ մոռանալ, որ Եվրոպայի անվտանգության և համագործակցության խորհրդակցության անցկացման կապակցությամբ որոշակի շրջաններ Արևմուտքում նյութում էին խորամանկ պլաններ, որոնց էությունն այն էր, որ ինֆորմացիայի ու մարդկանց փոխանակման լոզունգի տակ թույլ տան բուրժուական գաղափարախոսության և կուլտուրայի մուտքը սոցիալիստական երկրները, մեզ պարտադրեն մարտ, եթե կարելի է այսպես արտահայտվել, մեր իսկ տերիտորիայում, նպատակ ունենալով ներսից «խարխլել» սոցիալիստական կարգի հիմքերը։ Պատահական չէ, որ արևմտյան երկրների կառավարությունները և՛ բանակցությունների ընթացքում, և՛ Հելսինկիի բուն խորհրդակցության ժամանակ, և՛ հատկապես Եզրափակիչ ակտի ստորագրումից հետո առանձնապես շեշտը դնում էին (այժմ էլ շարունակում են դնել) այն պրոբլեմների վրա, որոնք կապված են հումանիտար հարցերի վերաբերյալ ձեռք բերված պայմանավորվածությունների հետ։ Եվ էականը միայն այն չէ, որ այդ հարցերն անջատվում և հակադրվում են մյուս կարևորագույն այն սկզբունքներին, որոնք համատեղ մշակվել են 35 պետությունների կողմից։ Արևմուտքում ոմանք հենց սկզբից էլ հույսերը դրել էին ոչ թե Եզրափակիչ ակտը նրա բոլոր մասերով կատարելու, այլ այդ պատմական փաստաթուղթը խաղաղության և ժողովուրդների փոխըմբռնման ամրապնդումից շատ հեռու նպատակներով օգտագործելու վրա։

Ինչպես հայտնի է, Եզրափակիչ ակտը արևմտյան երկրների լայն մամուլում չհրապարակվեց։ Այժմ միանգամայն ակնհայտ է, որ Հելսինկիի խորհրդակցության արդյունքները լռության մատնելը լոկ առաջին փուլն էր ու մի յուրատեսակ նախապատրաստություն քաղաքական այն կամպանիաների համար, որոնք հիմնված են Հելսինկիում ձեռք բերված պայմանավորվածությունների կոպիտ խեղաթյուրման ու հասարակական կարծիքի խաբեության վրա։ Ներկայումս, օգտվելով բնակչության անտեղյակությունից, մասսայական ինֆորմացիայի բուրժուական միջոցներն ամենաֆենոմենալ տրյուկներ են սարքում Հելսինկիում ձեռք բերված պայմանավորվածությունների շուրջը։ Մասնավորապես, նրանք սոցիալիստական երկրներին պահանջներ են ներկայացնում այնպիսի հարցերում, որոնց վերաբերյալ Եզրափակիչ ակտում բացարձակապես ոչ մի որոշում չկա։

Մի՞թե դա չի վկայում այն, որ քաղաքական որոշ գործիչներ, Եզրափակիչ ակտը ստորագրելիս, միաժամանակ հետապնդում էին ոչ այնքան ազնիվ բնույթի հեռու գնացող նպատակներ։ Մի՞թե դա չի խոսում այն մասին, որ մենք այստեղ բախվում ենք արևմտյան տերությունների բացահայտորեն կոորդինացված գծի հետ։

Բայց քանի որ սոցիալիստական երկրների ներքին գործերին բացահայտորեն միջամտելու փորձերը ձախողվեցին, որովհետև Հելսինկիում ձեռք բերված պայմանավորվածությունները կատարելու պատրվակով իմպերիալիզմին չհաջողվեց գաղափարական պայքարի երկրորդ ճակատ բացել սոցիալիստական պետությունների ներսում, նրանք ծավալեցին նոր աղմկոտ հակասովետական և հակասոցիալիստական կամպանիա։

Սոցիալիզմի հակառակորդների վարքագիծը բացատրվում է, հավանաբար, նրանով, որ հին կարգի ջատագովները հավասարակշռությունից դուրս են գալիս, երբ ակնառու կերպով համոզվում են, որ կապիտալիզմը ռեալ սոցիալիզմի հետ տեղի ունեցող մրցության մեջ տանուլ է տալիս, կորցնում է մեկ դիրքը մյուսի հետևից, որ հետզհետե ավելի ու ավելի են մերկանում նրա արատները, նրա հակաժողովրդական էությունը սոցիալ-տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի բոլոր ոլորտներում։ Ապագայի հանդեպ, հին աշխարհի մոտալուտ կործանման հանդեպ ունեցած սարսափը բուրժուական երկրների պետական և քաղաքական շատ գործիչների զրկում է աշխարհում տիրող ընդհանուր իրադրությունը, ուժերի ստեղծված հարաբերակցությունն օբյեկտիվորեն

նայելու ունակությունից, նրանց մղում է արտաքին քաղաքական այնպիսի գործողությունների, որոնք, մեղմ ասած, ամենևին չեն վկայում քաղաքական իմաստունության մասին։

Որոշակի շրջաններ Արևմուտքում այս կամ այն ձևով հակված են դեպի արտաքին քաղաքականությունը վարելու հին մեթոդները, դեպի «սառը պատերազմի» ժամանակաշրջանի եղանակները։ Այս կապակցությամբ ավելորդ չի լինի «քաղաքականություն խաղալու» այդ սիրահարներին հիշեցնել, որ մեր ժամանակներում նման փորձերը հղի են լուրջ հետևանքներով։ «Սառը պատերազմի» ռեցիդիվներն արդի պայմաններում կարող են անչափ ետ մղել աշխարհը, կանգնեցնել պետությունների և ժողովուրդների մերձեցման պրոցեսը, լարվածության թուլացման պրոցեսը։ Իսկ դա նշանակում է ոչ այլ ինչ, քան երկու սիստեմների պետությունների առճակատման սաստկացում բոլոր գծերով, հրաժարում խաղաղության և միջազգային համագործակցության ամրապնդման գործում ձեռք բերված այն ոչ պակաս կարևոր նվաճումներից, որոնք ապահովվել էին ժողովուրդների ու պետությունների համատեղ ջանքերով։

Այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ լարվածության թուլացման և միջազգային համագործակցության հակառակորդներն իրենց քաղաքականությունը վարում են՝ առանց հաշվի առնելու աշխարհում ստեղծված ուժերի հարաբերակցությունը, ավելի շուտ՝ որոշակի քաղաքական ու գործարար շրջանների պատրանքային պլանների հիման վրա։ Այստեղից էլ դիվանագիտական այն լեզվի վերածնումը, որը կիրառվում էր այն ժամանակաշրջանում, երբ ամերիկյան իմպերիալիզմը բացահայտորեն հռչակում էր համաշխարհային տիրապետության իր կուրսը։ Ըստ երևույթին, ոմանց համար դժվար է հրաժարվել այն մտքից, թե իբր Միացյալ Նահանգներին է վիճակված տնօրինելու բոլոր ժողովուրդների բախտը։ Այդ մասին է վկայում նաև այն փաստը, որ ռեակցիոն շրջանները Սովետական Միության և մյուս եղբայրական երկրների դեմ կազմակերպում են գաղափարական ու քաղաքական դիվերսիաներ, զրպարտչական, հակասովետական, հակակոմունիստական կամպանիաներ, փորձում են միջամտել սոցիալիստական երկրների ներքին գործերին այն պատրվակի տակ, որ իբր Միացյալ Նահանգներին է «պատկանում իրեն «մարդու իրավունքների պաշտպանության» պրոցեսի հետ «նույնացնելու վաղնջական պատմական իրավունքը»։

Ելույթ ունենալով սովետական արհմիությունների XVI համագումարում, Լ. Ի. Բրեժնևը հայտարարեց. «Մինչդեռ ուրիշներին ապրել սովորեցնելու Վաշինգտոնի հավակնությունները, կարծում եմ, չեն կարող ընդունվել ոչ մի ինքնիշխան պետության կողմից, չխոսելով արդեն այն մասին, որ այդպիսի հավակնությունների համար հիմքեր չեն տալիս ո՛չ հենց ԱՄՆ-ում տիրող իրերի վիճակը, ոչ էլ նրա գործողություններն ու քաղաքականությունը արտաքին աշխարհում։

Մեկ անգամ ևս կրկնում եմ. մենք չենք հանդուրժի, որ որևէ մեկը որևէ պատրվակով միջամտի մեր ներքին գործերին։ Այդպիսի միջամտության հիմքի վրա հարաբերությունների նորմալ զարգացումը, անշուշտ, աներևակայելի է»։

Սոցիալիստական պետությունների դեմ ուղղված գաղափարական դիվերսիաներն ունեն նաև իրենց «ներքին» ուղղվածությունը։ Հակասովետական, հակակոմունիստական հիստերիայի սաստկացումը իմպերիալիստական ռեակցիան ուղեկցում է աշխարհի ոչ սոցիալիստական մասի դեմոկրատական ու առաջադեմ ուժերի դեմ ուղղված հալածանքների ու տեռորի հետ, ձգտում ճնշել հակապատերազմական շարժումները։ Այս ամենը, անկասկած, նպաստում է միլիտարիզմի ու ռևանշիզմի ուժեղացմանը։ Այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ իմպերիալիստական բուրժուազիան Արևմուտքի մի շարք երկրներում առաջադեմ ու դեմոկրատական ուժերի դեմ մղած պայքարում չի խորշում ռեակցիայի ամենասև ուժերի ծառայություններից։ Հավանաբար, «ազատ աշխարհի» որոշ պաշտպաններ դրա մեջ են տեսնում ելքը կապիտալիստական սիստեմի տևական ու ամենասուր ճգնաժամից, այն փակուղուց, ուր հայտնվել է ժամանակակից կապիտալիզմը։



ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՌԱՎԵԼՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ կապիտալիզմի նկատմամբ դրսևորվում են հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, այդ թվում և արտաքին քաղաքականության բնագավառում։ Նոր դարագլուխ բացելով համաշխարհային քաղաքակրթության մեջ, Հոկտեմբերը վերացրեց իմպերիալիզմի մենաշնորհ դիրքը նաև միջազգային ասպարեզում։ Դրանով իսկ այն սկիզբ դրեց միջազգային հարաբերությունների ողջ սիստեմի արմատական վերակառուցմանը։

Միջազգային հարաբերությունների վերակառուցումը բարդ ու բազմապլան պրոցես է։ Այն շարունակվում է արդեն 60 տարի։ Պատմական պլանով դա պայմանավորված է այն բանով, որ աշխարհը պառակտվել է երկու սոցիալ-տնտեսական սիստեմների, ինչպես նաև աշխարհում դասակարգային և քաղաքական ուժերի հարաբերակցության հետագա. փոփոխմամբ։ Երկրագնդի վրա առաջին սոցիալիստական պետության առաջացումը՝ խաղաղության և միջազգային համագործակցության սկզբունքորեն նոր իր քաղաքականությամբ, անմիջապես որակապես նոր խնդիրներ դրեց համաշխարհային քաղաքականության առջև։

Սկզբնական շրջանում իմպերիալիզմը փորձեց այդ խնդիրները լուծել հասարակ ձևով՝ օրորոցի մեջ խեղդել սովետական իշխանությունը և վերականգնել իր անբաժան տիրապետությունն աշխարհում։ Իսկ երբ այդ բանը չհաջողվեց, ստիպված եղավ ընդունել քաղաքական նոր ռեալությունները, այն նոր իրադրությունը, որը պահանջում էր մշակել նաև նոր մոտեցում՝ սոցիալիստական պետությունների հետ ունեցած իր հարաբերություններին։

Իր կողմից, Սովետական Միությունն առաջարկեց այդ հարաբերությունների հիմքում դնել խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը, որի իմաստը Վ. Ի. Լենինը շարադրել էր սովետական իշխանության արտաքին քաղաքական առաջին իսկ փաստաթղթում՝ խաղաղության մասին դեկրետում։ Իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանները երկար ժամանակ ու համառորեն հրաժարվում էին մեր երկրի հետ իրենց հարաբերությունները հիմնել խաղաղ գոյակցության բազայի վրա։

Եվ այնուամենայնիվ ինքը՝ կյանքը, սոցիալիստական հասարակարգի հաղթական զարգացումը ստիպում էին նրանց ո՛չ միայն հանդուրժել սովետական պետության առկայությունը երկրի վրա և կողք կողքի գոյություն ունենալ, այլև գործարար ու քաղաքական բանակցություններ վարել նրա հետ, հաստատել առևտրական կապեր և կուլտուրական շփումներ։ Արդեն միայն դա նշանակում էր խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականության հաղթանակը։

Այսպես ձևավորվեց այն գլխավոր ուղղություններից մեկը, որոնցով սկսեց զարգանալ միջազգային հարաբերությունների արմատական վերակառուցման պրոցեսը։

Հիտլերյան Գերմանիայի ու նրա դաշնակիցների ջախջախումը, սոցիալիստական հեղափոխությունների հաղթանակը Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում ուժերի հարաբերակցությունն աշխարհում շեշտակիորեն փոխեցին հօգուտ սոցիալիզմի։ Այդ պրոցեսի հետագա խորացումը, որը երկրորդ համաշխարհային պատերազմից հետո դարձավ համաշխարհային հարաբերությունների մշտական գործոն, հնարավոր դարձրեց երկու տարբեր սիստեմների պետությունների առճակատումից անցումը նրանց խաղաղ հարաբերությունների և համագործակցության կարգավորման, խաղաղ գոյակցության՝ որպես պետությունների փոխհարաբերությունների հիմքի, ճանաչումը կապիտալիստական երկրների կողմից։

Միջազգային հարաբերությունների վերակառուցման մյուս կարևոր ուղղությունը պետք է համարել նոր, սոցիալիստական միջազգային հարաբերությունների ձևավորումն ու կատարելագործումը։ Սոցիալիզմը ո՛չ միայն կապիտալիզմին հակադրեց նոր, խաղաղասիրական արտաքին քաղաքականություն, այլև մշակեց միջազգային հարաբերությունների իր սեփական օրինակը, հարաբերություններ, որոնք ամենամարդասիրականն են ու իսկական դեմոկրատականը և մերժում են պատերազմի ու բռնության քաղաքականությու-

նը։ Դրանք սոցիալիզմի եղբայրական երկրների միջև եղած հարաբերություններն են, որոնք կառուցվում են մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա, հեղափոխական նվաճումների պաշտպանման և սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում եղբայրական բարեկամության և փոխադարձ օգնության հիման վրա։

Լինելով նոր տիպի միջազգային միություն, սոցիալիստական երկրների եղբայրական ժողովուրդների համաշխարհային համագործակցությունը միավորում է իսկական ազատ, անկախ ու իրավահավասար պետություններ։ «Սոցիալիստական պետությունները, որոնք միավորված են կարգերի ընդհանրությամբ, խաղաղության, սոցիալիզմի, դեմոկրատիայի և ազգային անկախության գործին նվիրվածությամբ, կամավոր կերպով զարգացնում են իրենց բազմակողմանի համագործակցությունը՝ մարքսիզմ-լենինիզմի և ինտերնացիոնալ համերաշխության սկզբունքների, յուրաքանչյուր պետության իրավահավասարության և սուվերենության հարգման, ներքին գործերին չմիջամտելու, ընկերական փոխօգնության հիման վրա»,— նշված է Հոկտեմբերի 60-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։

Եղբայրական երկրների համախմբվածության ամրապնդումը, նրանց կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջև բարեկամության և համագործակցության խորացումը զգալիորեն մեծացնում են ռեալ սոցիալիզմի միացյալ հզորությունն ու ազդեցությունը համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա։ Լինելով ամենադինամիկ տնտեսական ուժը աշխարհում, սոցիալիստական պետությունների համագործակցությունը դարձել է նաև համաշխարհային քաղաքականության առաջատար գործոն։

Հետպատերազմյան պատմության փորձը ցույց է տալիս, որ բոլոր քիչ թե շատ նշանակալի նախաձեռնությունները, որոնք ուղղված են կենսական միջազգային պրոբլեմների լուծմանը, ելել են ու ելնում են Սովետական Միությունից և մյուս սոցիալիստական պետություններից։ Ընդսմին սոցիալիստական պետությունները հետևողականորեն վարում են համաշխարհային քաղաքականության կոմպլեքսային, խոշոր մասշտաբային պրոբլեմների լուծման կուրսը։ Դրանց թվին են պատկանում, անկասկած, Եվրոպայի անվտանգության և համագործակցության հարցերը, միջազգային խաղաղության, սպառազինությունների մրցավազքի դադարեցման և թե՛ միջուկային, թե՛ սովորական սպառազինությունների կրճատման հարցերի լայն շրջանը։

Բնական է, որ դա կապված է չափազանց մեծ դժվարությունների հետ։ Սակայն սոցիալիստական արտաքին քաղաքականության արժանիքն էլ հենց այն է, որ համառ ու տևական պայքարի շնորհիվ հաջողվում է լուծում գտնել եվրոպական և համաշխարհային քաղաքականության, կարծես, անլուծելի պրոբլեմների համար, քայլ առ քայլ բարելավել միջազգային իրադրությունը, տեղից շարժել անգամ այնպիսի պրոբլեմները, ինչպիսին է զինաթափումը։ Իսկ այդպիսի հարցերում հեշտ ուղիներ չկան և չեն կարող լինել։ Այդ մասին են վկայում նաև այն դժվարությունները, որոնք ամերիկյան կողմի մեղքով ծագեցին ստրատեգիական սպառազինությունները սահմանափակելու վերաբերյալ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև տեղի ունեցող բանակցություններում։

Հարկավոր է նկատի ունենալ, որ բանակցությունների մեր պարտնյորները ստիպված են «վերասովորել»։ Դեռ ոչ վաղ անցյալում միջազգային վեճեր ծագելիս նրանք հենվում էին միանգամայն այլ մեթոդների վրա, դիմում էին ամենից առաջ կոպիտ ուժի, ռազմական ավանտյուրաների օգտագործման։ Իսկ այժմ սոցիալիզմը նրանց հարկադրում է միջազգային հարցերի համար լուծում գտնել խաղաղ ճանապարհով, բանակցությունների սեղանի շուրջը։ Արևմտյան տերությունների կառավարող շրջաններն այժմ չեն կարող հաշվի չնստել այն բանի հետ, որ բոլորովին անհեռանկար է հույսերը դնել սոցիալիզմի նկատմամբ ռազմական հաղթանակ տանելու վրա։ Դրանով իսկ ավելի ռեալիստական տենդենցներ են հաստատվում կապիտալիստական մի շարք երկրների արտաքին քաղաքականության մեջ, որոնց ղեկավար գործիչները



ստիպված են խոստովանել հասարակական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության անհրաժեշտությունը։

Սովետական Միության և մյուս եղբայրական երկրների արտաքին քաղաքական ակտիվ գործունեության բնորոշ առանձնահատկություններից մեկն այն է, որ այն խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման համար մղվող պայքարը անխզելիորեն կապակցում է բոլոր ժողովուրդների ազգային և սոցիալական ազատագրության, պետական սուվերենության ամրապնդման համար մղվող պայքարի հետ։ Այդ գիծն անցնում է նրանց բոլոր արտաքին քաղաքական գործողությունների միջով։ Այն ամրագրված է, ինչպես հայտնի է, ՍՄԿԿ-ի և մյուս եղբայրական կուսակցությունների բարձրագույն ֆորումների փաստաթղթերում և անշեղորեն կենսագործվում է։ Այսպես, օրինակ, սահմանելով ՍՍՀՄ-ի արտաքին քաղաքականության հիմնական ուղղությունները, ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարներն իբրև առաջնահերթ խնդիրներից մեկն առաջադրեցին ազգային-ազատագրական շարժման պաշտպանությունը և համակողմանի համագործակցության իրականացումը երիտասարդ զարգացող երկրների հետ։

ՍՄԿԿ XXV համագումարը, ելնելով նոր իրադրությունից, խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի ծրագրում նորից շեշտեց. «Միջազգային կարևորագույն խնդիրներից մեկը համարել գաղութային ճնշման, ժողովուրդների իրավահավասարության և անկախության սահմանափակման սիստեմի բոլոր մնացուկների, գաղութատիրության և ռասիզմի բոլոր օջախների լիակատար վերացումը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 39)։

Սովետական Միությունը իմպերիալիզմի գաղութային սիստեմի իսպառ վերացման հարցի առաջադրման նախաձեռնողը հանդիսացավ։ Գաղութային կայսրությունների խորտակումը մարդկության պատմության կարևորագույն փուլերից մեկն է։ Միևնույն ժամանակ դա այն կարևորագույն գործոններից մեկը եղավ, որոնք լուրջ փոփոխություններ առաջացրին աշխարհում և արագացրին միջազգային հարաբերությունների վերակառուցման պրոցեսը։ Դա պայմանավորված է ամենից առաջ նրանով, որ տասնյակ երիտասարդ աֆրոասիական պետություններ ակտիվորեն մտել են միջազգային հարաբերությունների սիստեմի մեջ և ավելի ու ավելի նկատելի դեր են կատարում այնտեղ։ Դրա հետ մեկտեղ գաղութային կայսրությունների վերացումն անդրադարձավ նաև նախկին մետրոպոլիաների դրության վրա։ Գաղութային թիկունքների կորուստը Եվրոպայի երբեմնի հզորագույն մեծ տերությունների կողմից վերջիններիս իջեցրեց մինչև միջակ պետությունների մակարդակը, սահմանափակեց նրանց տնտեսական ու քաղաքական հնարավորությունները համաշխարհային ասպարեզում։ Դրա հետևանքով ուժերի տեղաբաշխման մեջ նշանակալի տեղաշարժեր կատարվեցին նաև հենց իմպերիալիստական լագերում, արագացավ ամբողջ իմպերիալիզմի փլուզման, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա սրման պրոցեսը։

Այս ամենը սոցիալիզմի հաղթանակների, մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների մշտապես աճող ներգործության արդյունք է, որոնք ցուցադրում են իրենց հեղափոխական-վերակերտիչ մեծ ուժը։

Սոցիալիզմի հեղափոխականացնող ներգործությունն իր արտահայտությունն է գտնում այն դերի ուժեղացման մեջ, որ տարբեր երկրների ժողովրդական զանգվածները, հասարակական ուժերը կատարում են արդի միջազգային հարաբերություններում։ Առանց չափազանցնելուց վախենալու, կարելի է ասել, որ ժողովուրդները, հասարակական ուժերը, քաղաքական կուսակցություններն ու հոսանքները երբեք այնքան ակտիվորեն չեն մասնակցել միջազգային պրոբլեմների քննարկմանը, ինչպես մեր օրերում, որ նրանց ներգործությունը կառավարող դասակարգերի քաղաքականության վրա երբեք այնքան նկատելի չի եղել, որքան այժմ։

Սոցիալիզմը աշխատավորների լայն զանգվածներին հաղորդակից դարձ-

# ԲՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ՍՍՀՄ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԻԾԸ

## ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆՀԱՏԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

*ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխության հաղթանակի շնորհիվ սկիզբ առած նոր հասարակարգի 60-ամյա պատմությունն անհերքելիորեն վկայում է, որ, ի տարբերություն բոլոր նախորդ հասարակական-տնտեսական ֆորմացիաների, սոցիալիզմը զարգանում է վերընթաց գծով, բացառում սոցիալական հակամարտությունն ու պատերազմները և, ավելի ու ավելի բարձր աստիճանի հասցնելով հասարակական կյանքի բոլոր կողմերը, իրական պայմաններ է ստեղծում մարդկային անհատի համակողմանի զարգացման, անհատի և հասարակության ներդաշնակ միասնություն ստեղծելու համար։*

*Դա առավել ևս ակնհայտ է այսօր, երբ մեր երկիրը վստահորեն թևակոխել է կոմունիստական հասարակարգի զարգացման նոր, ավելի հասուն փուլ, որն իրավացիորեն կոչվում է զարգացած սոցիալիզմ։ Այն բնութագրվում է սոցիալիստական զարգացման շնորհիվ ստեղծված սեփական հիմքով՝ հզորագույն արտադրաուժերով, փոխադարձ օգնության և համագործակցության հասուն արտադրահարաբերություններով, հասարակության սոցիալական միասնությամբ, համակողմանիորեն ծաղկող և անշեղորեն մերձեցող ազգերի ու ազգությունների համախմբումով միասնական սովետական ժողովրդի մեջ, ժողովրդի բարձր կազմակերպվածությամբ, գաղափարայնությամբ, գիտակցականությամբ և համախմբությամբ հասարակության առաջատար քաղաքական ուժի՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության շուրջ։ Դա ամենաբարձր հումանիզմի, իսկական դեմոկրատիայի հասարակարգ է, որի կյանքի օրենքը բոլորի հոգատարությունն է յուրաքանչյուրի բարօրության նկատմամբ և յուրաքանչյուրի հոգատարությունը բոլորի բարօրության նկատմամբ, այսինքն՝ հասարակության և անհատի այն ներդաշնակ միասնությունը, որի մասին դարերով երազել և որի համար հետևողականորեն պայքարել են մարդկության մեծագույն հանճարները։*

*Միանգամայն բնական է, որ սոցիալիստական հասարակության զարգացման այս նոր աստիճանը պահանջում է արդեն իսկ համաժողովրդական դարձած սոցիալիստական պետության նպատակների ու սկզբունքների, նրա կազմակերպման հիմունքների սահմանման և վավերագրման մի նոր մակարդակ։ Ոչ միայն մեր երկրի, այլև ամբողջ համաշխարհային քաղաքակրթության ապագայի համար վիթխարի նշանակություն ունեցող այդ խնդրի փայլուն իրականացումն է սահմանադրական հանձնաժողովի ներկայացրած և ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի կողմից հիմնականում հավանություն գտած Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրու-*



*ձեռք է բերվել աշխատանքի արտադրողականության տարբեր մակարդակ ունեցող ճյուղերի կառուցվածքային տեղաշարժերի հետևանքով։ Եթե չեզոքացնենք կառուցվածքային տեղաշարժերի ազդեցությունը, ապա կստացվի, որ հանրապետության նյութական արտադրության ամբողջ ոլորտում հասարակական աշխատանքի արտադրողականությունը 1960—1965 թթ. աճել է 15,7, 1965—1970 թթ.՝ 21,2, 1970—1975 թթ.՝ 25,7, իսկ 1960—1975 թթ.՝ 84,1 տոկոսով, այսինքն՝ այնքան, որքան նյութական արտադրության առանձին ճյուղերի աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը։*

*Հաշվարկները ցույց են տալիս, որ միայն կառուցվածքային տեղաշարժերի հետևանքով հանրապետությունում հասարակական աշխատանքի արտադրողականությունը 1960—1965 թթ. աճել է 17, 1965—1970 թթ.՝ 14, 1970—1975 թթ.՝ 8,2, իսկ 1960—1975 թթ.՝ 38,4 տոկոսով։ Եթե հանրապետության նյութական արտադրության ոլորտում զբաղված յուրաքանչյուր աշխատողի աշխատանքի միջին արտադրողականությունը մնար 1960 թվականի մակարդակին, ապա 1975-ի հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի արտադրության ծավալներն ապահովելու համար կպահանջվեր հանրապետության նյութական արտադրության ոլորտի աշխատողների թիվն ավելացնել 524 հազար մարդով։ Ավելին, եթե արտադրության ոլորտի աշխատողների մեջ առանձին ճյուղերի տեսակարար կշիռները չփոխվեին հօգուտ աշխատանքի արտադրողականության բարձրացման, այդ դեպքում 1975 թվականի հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի արտադրության ծավալներն ապահովելու համար կպահանջվեր նյութական արտադրության ոլորտի աշխատողների թիվն ավելացնել ևս 239 հազարով։ Ահա թե ինչպիսի խոշոր նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացումը և ճյուղային կառուցվածքի առաջադիմական տեղաշարժերը հասարակական արտադրության մասշտաբների մեծացման գործում։*

*Հայտնի է, որ հասարակական արտադրության արդյունքների ծավալը պայմանավորվում է նյութական արտադրության ոլորտում գործադրվող կենդանի աշխատանքի քանակով և նրա աշխատանքի արտադրողականության մակարդակով։ Այս երկու գործոններից վճռականը հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։*

*1961—1975 թթ. հանրապետության հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի 4/5-ից ավելին ստացվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի աճման գործում աշխատանքի արտադրողականության տեսակարար կշիռն ավելի մեծ կլիներ, եթե օգտագործվեին այդ ասպարեզում ունեցած բոլոր հնարավորությունները։ Գաղտնիք չէ, որ ձեռնարկությունների մի զգալի մասը թերակատարում է աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանային առաջադրանքները։ Մեծ չափերի են հասնում բանվորական ժամանակի կորուստները և բանվորական ուժի հոսունությունը։ Թերակատարվում են տեխնիկական առաջընթացի պլանները, վատ են օգտագործվում մեքենաներն ու սարքավորումները, ցածր է դրանց օգտագործման հերթափոխության գործակիցը, և մեծ մասշտաբների են հասնում դրանց պարապուրդները։*

*ՍՄԿԿ XXV համագումարը, ամփոփելով իններորդ հնգամյակում մեր երկրի ձեռք բերած տնտեսական հաջողությունները և հաստատելով տասներորդ հնգամյակում տնտեսության զարգացման հիմնական ուղղությունները, առանձնահատուկ ուշադրություն նվիրեց հանրային արտադրության որակական ցուցանիշներին, մասնավորապես աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերին։ Համագումարում Լ. Ի. Բրեժնևն ուղղակի նշեց, որ երկրի առջև կանգնած տնտեսական և սոցիալական բազմազան խնդիրները հաջողությամբ լուծելու համար այլ ուղի չկա, բացի* աշխատանfի արտադրողականության արագ աճից, ամբողջ հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացումից: *Հնգամյա պլանով նախատեսված է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ապահովել արդյունա-*

Խաղաղասիրական ոգով են տոգորված ՍՍՀՄ պետական իշխանության բարձրագույն մարմինների իրավասությունները սահմանող հոդվածները։ Այսպես, 119-րդ հոդվածի 16-րդ կետում ասված է, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը «ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում պատերազմական վիճակ է հայտարարում ՍՍՀՄ-ի վրա ռազմական հարձակում կատարելու դեպքում կամ այն դեպքում, երբ անհրաժեշտ է կատարել ագրեսիայից փոխադարձաբար պաշտպանվելու միջազգային պայմանագրային պարտավորությունները»։ Դա նշանակում է, որ ՍՍՀՄ-ը երբեք չի սպառնացել և չի սպառնում որևէ երկրի անվտանգությանը, որ պատերազմական վիճակը Սովետական Միությունում կարող է ծագել միմիայն պաշտպանական նկատառումներով։

ՍՍՀՄ-ը վճռաբար դեմ է պետությունների հարաբերություններում ուժ կամ ուժի սպառնալիք գործադրելուն, առաջարկելով տարաձայնությունները, այդ թվում նաև հողային վեճերը, լուծել խաղաղ ճանապարհով, բանակցությունների միջոցով։ Այս սկզբունքներն իրենց արտացոլումն են գտել նախագծի 29-րդ հոդվածում։ Այստեղ ասվում է նաև պետությունների սուվերեն հավասարության, սահմանների անխախտության, պետությունների տերիտորիալ ամբողջականության, ներքին գործերին չմիջամտելու, մարդու իրավունքների և հիմնական ազատությունների հարգման, ժողովուրդների իրավահավասարության և իրենց բախտը տնօրինելու իրավունքի, պետությունների համագործակցության, միջազգային իրավունքի հանրաճանաչ սկզբունքներից ու նորմերից բխող պարտավորությունների, ՍՍՀՄ-ի կնքած միջազգային պայմանագրերի բարեխիղճ կատարման մասին։

Մարդու իրավունքների և հիմնական ազատությունների հիշատակումը արտաքին քաղաքականությանը վերաբերող գլխում ուղղակի պատասխան է արևմտյան այն քաղաքագետներին, որոնք հավակնում են ստանձնել սովետական քաղաքացիների իրավունքների կեղծ պաշտպանների դերը։

Տեղի տալով ռազմարդյունաբերական կոմպլեքսի ճնշմանը, ԱՄՆ-ի նոր վարչակազմը այսպես կոչված «մարդու իրավունքների հարցը» օգտագործում է որպես պատրվակ սպառազինությունների մրցավազքը շարունակելու և պատերազմական սպառնալիքն ուժեղացնելու նպատակով։

ՍՍՀՄ Սահմանադրության՝ սովետական քաղաքացիների իրավունքներին վերաբերող հոդվածները հողմացրիվ են անում այդ հավակնությունները։ Ինչ վերաբերում է արտաքին քաղաքականության վրա ներազդելու իրավունքին, ապա պետք է ասել, որ սովետական քաղաքացիներին վերապահված է, ամենից առաջ, ամենակարևոր, ներկա և ապագա սերունդների համար կենսական նշանակություն ունեցող ազատությունը՝ ընդդեմ պատերազմի, հանուն խաղաղության պայքարելու ազատությունը, որը կապիտալի երկրներում, մասնավորապես ԱՄՆ-ում, ճնշված է ոստիկանական մահակների ու գնդակների ուժով։ Ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ արհմիությունների 16-րդ համագումարում, ուրիշներին ապրել սովորեցնելու Վաշինգտոնի հավակնությունները չեն կարող ընդունվել ոչ մի սուվերեն պետության կողմից։ Էլ չասած այն մասին, որ նման հավակնությունների համար հիմք չեն տալիս ոչ գործերի վիճակը բուն ԱՄՆ-ում, ոչ էլ նրա գործողություններն ու քաղաքականությունն արտաքին աշխարհում։

Բավական է նշել, որ ԱՄՆ-ում սոցիալ-դասակարգային անիրավահավասարության կողքին մոլեգնում է ազգային-ռասայական խտրականությունը։ 50 միլիոն գունավոր բնակչության՝ նեգրերի, լատինա-ամերիկյան ծագում ունեցող ամերիկացիների («չիկանոս»), պուերտոռիկացիների, հնդկացիների ու հավայացիների համար բացառված են այն իրավունքներն ու ազատությունները, որոնք վերապահված են սպիտակամորթերին։ Այդ յուրատեսակ ներքին գաղութակալության ուղղակի շարունակությունն է Միացյալ Նահանգների արտաքին քաղաքականությունը, մասնավորապես օգնությունն ու աջակցությունը գաղութատիրության, ռասիզմի և ապարտեիդի վարչակարգերին Աֆրիկայի հարավում։



Սահմանադրության նախագծում սահմանված են նաև ՍՍՀՄ և սոցիալիստական դաշինքի մյուս երկրների հարաբերությունների սկզբունքները։ 4-րդ գլխի 30-րդ հոդվածում ասված է. «Սովետական Միությունը, որպես սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, սոցիալիստական դաշինքի բաղկացուցիչ մաս, զարգացնում և ամրապնդում է բարեկամությունն ու համագործակցությունը, ընկերական փոխօգնությունը սոցիալիզմի երկրների հետ՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիման վրա, ակտիվորեն մասնակցում է տնտեսական ինտեգրացմանը և աշխատանքի միջազգային, սոցիալիստական բաժանմանը»։

Բնականաբար, ՍՍՀՄ-ը բացառիկ նշանակություն է տալիս սոցիալիստական համագործակցության ըստ ամենայնի ամրապնդմանը, քանի որ այն արդի պատմական զարգացման, համաշխարհային հեղափոխական պրոցեսի գլխավոր շարժիչ ուժն է։

Գաղութատիրության կործանումը և նոր երիտասարդ պետությունների առաջ գալը արդի պատմական զարգացման կարևոր առանձնահատկություններից են։ Այդ պատճառով, ըստ իս, հարկ կա նախագիծը լրացնել մի հոդվածով՝ զարգացող երկրների հետ ՍՍՀՄ հարաբերությունների սկզբունքների վերաբերյալ։ Նպատակահարմար կլիներ այն ձևակերպել հետևյալ կերպ. «Սովետական Միությունը, առաջնորդվելով սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքով և ազգերի ինքնորոշման լենինյան դրույթով, զարգացող երկրների հետ իր հարաբերությունները կառուցում է իրավահավասարության, սուվերենության, շահերի փոխադարձ հարգման, ներքին գործերին չմիջամտելու հիման վրա։

Նա համակողմանի անշահախնդիր օգնություն է ցույց տալիս զարգացող երկրներին, նպաստելով նրանց տնտեսական ու քաղաքական անկախության ամրապնդմանը, սոցիալական առաջընթացին։ ՍՍՀՄ-ը հանդես է գալիս գաղութակալության մնացուկների վերացման օգտին, ընդդեմ նեոգաղութակալության, ռասիզմի ու ապարտեիդի բոլոր ձևերի»։

Հ. Վ. ՀԱԿՈԲՅԱՆ
Երևանի պետական համալսարանի ավագ դասախոս

# ՀԱՆՈՒՆ ՄԱՐԴՈՒ ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ

Սովետահայ յուրաքանչյուր քաղաքացի հպարտության զգացումով է ընթերցում ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը, որտեղ վառ ու համոզիչ ցույց են տրված այն վիթխարի հաջողությունները, որ մեր երկիրը հասել է վերջին չորս տասնամյակներում։

Անկասկած, նոր Սահմանադրության ընդունումը կենսական անհրաժեշտություն է, ժամանակի պահանջը, քանի որ, ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում իր զեկուցման մեջ նշեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը, գործող Սահմանադրությունն ընդունելուց հետո անցած 40 տարիների ընթացքում մեր երկրում, մեր ողջ հասարակության մեջ տեղի են ունեցել խոր փոփոխություններ։

Ուրախալի է, որ Սահմանադրության նախագիծը համաժողովրդական քննարկման է դրված մեծ Հոկտեմբերի 60-ամյակի տարում։ Եվ այսօր սովետական մարդիկ, ուսումնասիրելով մեր կյանքի կարևորագույն ուղենիշը հանդիսացող հիմնական օրենքի նախագիծը, այն ընդունում են որպես Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո մեր ձեռք բերած նվաճումների արդյունք։

Նախագիծը շոշափում է սովետական յուրաքանչյուր քաղաքացու կյանքի բուն հիմքերը, հաստատելով սոցիալական բարօրության նրա իրավունքները՝ ամենալայն և ամենադեմոկրատական առումով։

Հիմնական օրենքի նախագծում մեծ ուշադրություն է հատկացված նաև սոցիալական այնպիսի կարևորագույն խնդրի, ինչպիսին է մարդու առողջության պահպանումը։

Իրենց ողջ գործունեության ընթացքում ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը անշեղորեն կենսագործում են գլխավոր «պետական ունեցվածքի»— մարդու առողջության նկատմամբ հոգատար վերաբերմունքի մասին լենինյան պատգամները։ Առողջության պահպանման նկատմամբ պետական հոգատարությունը վավերագրվում է մարդու սահմանադրական իրավունքների մեջ։ Դա խոր ու լայն արտացոլված է սովետական նոր Սահմանադրության նախագծի՝ «ՍՍՀՄ քաղաքացիների հիմնական իրավունքները, ազատություններն ու պարտականությունները» գլխում։ Այստեղ կա մի էական նորություն, որի մասին ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում ընկ. Լ. Ի. Բրեժնևն իր զեկուցման մեջ հետևյալն ասաց. «...Եթե 1936 թվականի Սահմանադրության մեջ խոսվում էր հիվանդության դեպքում և անաշխատունակությունը կորցնելիս նյութական ապահովության իրավունքի մասին, ապա այժմ հարցը դրվում է ավելի լայնորեն. սովետական մարդկանց համար երաշխավորվում է առողջության պահպանման իրավունքը»։

Ահա արդեն 60 տարիների ընթացքում առողջապահության սոցիալիստական սիստեմը ապահովում է ողջ բնակչության համար մատչելի, ձրի, գիտականորեն հիմնավորված և որակյալ բուժօգնություն։ Որտեղ էլ ապրելիս լինի սովետական մարդը՝ մեծ քաղաքում, թե հեռավոր շրջանում, ամենուր, հարկ եղած դեպքում, անմիջապես գտնում է նա բժշկին, հիվանդանոցը, դեղատունը։

Հասարակության յուրաքանչյուր անդամի առողջության նկատմամբ սովետական կառավարության հոգատարությունը կարելի է ցուցադրել հենց մեր հանրապետության օրինակով։ Այսօր Հայաստանում գործում է հիվանդանոցապոլիկլինիկային, սանիտարահակահամաճարակային հիմնարկությունների, դիսպանսերների, միջշրջանային մասնագիտացված կենտրոնների լայն ցանց։ Բնակչությանը սպասարկում են շուրջ 500 բուժհիմնարկներ՝ 25 հազար մահճակալային ֆոնդով։ Ժողովրդական առողջապահության բնագավառում աշխատում են 9 հազար բժիշկներ և 23 հազար միջին բուժաշխատողներ։

Մահճակալային ցանցի ընդլայնման հետ այժմ հանրապետությունում մեծ աշխատանքներ են տարվում բժշկական գիտության և պրակտիկայի ժամանակակից մակարդակին առավել համապատասխան խոշոր հիվանդանոցային համալիրների կառուցման նպատակով։ Այդպիսի խոշոր կենտրոններ են Վ. Ի. Լենինի անվան հանրապետական (1000 մահճակալով), Երևանի շտապ բուժօգնության կլինիկական, Աբովյանի 600 մահճակալանոց հիվանդանոցը և այլն։

Մեծ միջոցառումներ են անցկացվում հանրապետությունում նաև ամբուլատոր-պոլիկլինիկական ծառայության բարելավման նպատակով։

Բայց դա բոլորը չէ։ Եթե 40 տարի առաջ Երևանում, գլխավոր դեղատնային վարչությանը կից գործում էր ընդամենը մեկ դեղագործական լաբորատորիա, որտեղ արտադրվող 1,5 տասնյակ անուն դեղամիջոցները չէին բավարարում դեղորայքի նկատմամբ հանրապետության ազգաբնակչության նույնիսկ նվազագույն պահանջմունքները, ապա այսօր ժամանակակից սարքավորումներով հագեցած մեր դեղագործարանն արտադրում է ավելի քան 40 անուն դեղորայք, որոնց կարելի է հանդիպել երկրի գրեթե բոլոր անկյուններում։ Երկրում մեծ ճանաչում է գտել նաև Երևանի վիտամինային պրեպարատների գործարանը։ Էլ չենք ասում Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի գիտնականների ջանքերով ստեղծված բազմաթիվ դեղամիջոցների մասին, որոնք առաքվում են նաև արտասահման։

Այո՛, անցած տարիներին երկրի ու մեր հանրապետության առողջապահությունը վիթխարի վերելք է ապրել։ Եվ դա ձեռք է բերվել բնավ ոչ հեշտ ճանապարհով։ Հիշենք թեկուզ համաճարակային հիվանդությունների դեմ մղած պայքարը։ Այն ժամանակ՝ սովի, աղքատության, տնտեսական ծանր պայմաններում, սովետական իշխանությունն անհաշտ պատերազմ հայտարարեց այդ հիվանդություններին, արեց ամեն հնարավորը (երբեմն և անհնարը), որպեսզի հաղթահարվեին դրանք և պահպանվեր հազարավոր մարդկանց կյանքը։ Արդեն իսկ այդ հոգատարության մեջ դրսևորվեցին նոր պետության ու նրա քաղաքացիների փոխհարաբերությունները, այն դարձավ նոր սոցիալիստական բարոյականության բաղադրամասերից մեկը։

Նոր Սահմանադրության նախագծի 42-րդ հոդվածը նշում է, որ քաղաքացիների առողջության պահպանման իրավունքը «...ապահովվում է առողջապահության պետական հիմնարկների կողմից ցույց տրվող ձրի որակյալ բժշկական օգնությամբ, անվտանգության տեխնիկայի և արտադրական սանիտարիայի զարգացմամբ ու կատարելագործմամբ, քաղաքացիների բուժման և կազդուրման հիմնարկների ցանցի ընդլայնմամբ, կանխարգելիչ լայն միջոցառումների իրականացմամբ, շրջակա միջավայրի առողջացման միջոցառումներով, աճող սերնդի առողջության նկատմամբ առանձնահատուկ հոգատարությամբ. երեխաների աշխատանքի արգելմամբ. հիվանդության կանխմանն ու նվազեցմանը, քաղաքացիների երկարամյա ակտիվ կյանքի ապահովմանը նպատակամղված գիտական հետազոտությունների ծավալմամբ»։

Հստակ, հակիրճ ու ամփոփ է ասված։ Հիրավի, մեր երկրում արվում է ամեն ինչ մարդու առողջության պահպանման համար, դրանով մտահոգված են զանազան կազմակերպություններ, հիմնարկություններ ու հաստատություններ։ Սակայն այդ գործում ամենամեծ բաժինն ունեն հատկապես պրակտիկ բժշկության բնագավառի աշխատողները։ Ահա թե ինչու խանդավառությամբ ու գոհունակությամբ ծանոթանալով սովետական նոր Սահմանադրության նախագծին, մենք՝ բժիշկներս, ջերմ հավանություն ենք տալիս դրան և, մեծ երախտագիտություն հայտնելով հարազատ կուսակցությանն ու կառավարությանը, հավաստիացնում ենք, որ մեր ողջ ուժերն ու կարողություններն անմնացորդ կնվիրենք առողջապահության աշխատողների առջև դրված խնդիրների անթերի լուծմանը, աշխատանքային նորանոր նվաճումներով կդիմավորենք մեծ Հոկտեմբերի 60-ամյա հոբելյանը։

Մ. Մ. ԴԱԼԼԱՔՅԱՆ
ՀՍՍՀ վաստակավոր բժիշկ

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ և ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ

**Կ. Ս. ԶՈՒՐԱԲՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու**

ՎԵՐՋԻՆ ՎԵՑ ՏԱՍՆԱՄՅԱԿՈՒՄ աշխարհում տեղի են ունեցել հսկայական փոփոխություններ։ «Այդ խոր, համապարփակ սոցիալական փոփոխությունների սկիզբը,— նշված է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— դրեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը։ Այն հեղափոխական հզոր ազդակներ տվեց միջազգային բանվորական շարժման բոլոր ջոկատներին, նոր հնարավորություններ ու հեռանկարներ բացեց գաղութային և կիսագաղութային երկրներում ազգային-ազատագրական պայքարի ծավալման համար։ Արդի դարաշրջանի ամբողջ հասարակական կյանքի կենտրոնում վերջնականապես և անդառնալիորեն կանգնեց բանվոր դասակարգը։ Մեծ Հոկտեմբերի ազդեցությամբ բոլոր մայրցամաքներում սկսվեց կազմակերպված պրոլետարական ավանգարդի՝ կոմունիստական կուսակցությունների ձևավորումը»։

Մեծ Հոկտեմբերով սկսված հեղափոխական պրոցեսի հետագա զարգացման վառ վկայություն է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումը։ Իր գոյության 30 տարում այն զգալիորեն աճեց ու ամրապնդվեց։ Սոցիալիստական երկրների մեծ մասն այժմ հաջողությամբ ավարտել է սոցիալիստական շինարարության առաջին ստադիան և ձեռնամուխ եղել հաջորդ՝ զարգացած սոցիալիզմի կառուցմանը։

Սոցիալիզմի հաջողությունները էականորեն փոխեցին ուժերի հարաբերակցությունը համաշխարհային ասպարեզում։ Եթե 1950 թ. միայն ՏՓԽ-ի երկրներն ապահովում էին համաշխարհային արդյունաբերական արտադրության 17,5 տոկոսը, ապա 1976 թ. նրանք արդեն տալիս էին այդ արտադրության ծավալի 1/3-ից ավելին։ 1971—1975 թթ. սոցիալիզմի երկրների ազգային եկամուտն աճեց գրեթե 36 տոկոսով, մինչդեռ զարգացած կապիտալիստական պետություններում այդ աճը կազմեց ընդամենը 14 տոկոս, արդյունաբերական արտադրանքը մեծացավ համապատասխանաբար 45 և 9 տոկոսով։ Սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի կոմպլեքսային ծրագրով նախատեսված նպատակների ու խնդիրների իրագործումը նպաստեց սոցիալիստական համագործակցության տնտեսական հզորության հետագա ամրապնդմանը, եղբայրական երկրների քաղաքական միասնության ուժեղացմանը։



Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորության, նրա քաղաքական ազդեցության աճն ամուր պատնեշ է իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների, նրա հակաժողովրդական քաղաքականության դեմ։ Մյուս կողմից, այդ հզորությունը զորավիգ ու հենարան է մեր ժամանակի բոլոր հեղափոխական, առաջադիմական ուժերի համար։ Համաշխարհային սոցիալիզմի հաջողությունները, բացի դրանից, վճռականապես նպաստում են սոցիալիզմի ուժերի բազմապատկմանը, ողջ աշխարհում գիտական սոցիալիզմի գաղափարների տարածմանը։

Վերջին տասնամյակների մյուս կարևորագույն իրադարձությունը, որը հսկայական ազդեցություն է ունեցել մարդկության հետպատերազմյան պատմության ողջ ընթացքի վրա, իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումն է։ Իմպերիալիզմի գաղութային տիրապետության վերացումը ո՛չ միայն հանգեցրեց երկրագնդի բնակչության միլիոնավոր զանգվածների ազգային ազատագրմանը, այլև վիթխարի չափով արագացրեց ամբողջ աշխարհի սոցիալ-տնտեսական և քաղաքական զարգացումը, դարձավ ուժերի հարաբերակցության փոփոխման կարևոր գործոն՝ ի վնաս իմպերիալիզմի, ռեակցիայի, պատերազմի ուժերի։

Արդիականության մյուս խոշորագույն երևույթը, որը մեծապես պայմանավորում է և կպայմանավորի համաշխարհային զարգացման բնույթը, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումն է։

Կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թվականի մոսկովյան խորհրդակցությունում նշվեց, որ շահագործողական կարգի «հին», կլասիկ հակասությունների կողքին պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի, գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում ծագում են նոր հակասություններ։ «Դա՝ նախ և առաջ գիտատեխնիկական հեղափոխության կողմից բացվող անսահման հնարավորությունների և այն խոչընդոտների միջև եղած հակասությունն է, որոնք կապիտալիզմը հարուցում է ամբողջ հասարակության օգտին դրանք օգտագործելու ճանապարհին... Դա ժամանակակից արտադրության հասարակական բնույթի և նրա կարգավորման պետական-մոնոպոլիստական բնույթի միջև եղած հակասությունն է։ Դա ո՛չ միայն աշխատանքի և կապիտալի միջև եղած հակասության ուժեղացումն է, այլև ազգի գերակշռող մեծամասնության շահերի և ֆինանսական օլիգարխիայի միջև եղած հակամարտության խորացումը»։

Կապիտալիզմի հին և նոր հակասությունների համատեղ ներգործությունը 70-ական թվականների սկզբին հարուցեց հերթական տնտեսական ճգնաժամ, որը համընկավ բուրժուական հասարակության ողջ քաղաքական վերնաշենքի ճգնաժամի, նրա գաղափարա-բարոյախոսական ճգնաժամի հետ։ Այժմ կապիտալիզմի ապրած ցնցումները, որոնք նրա հետպատերազմյան ողջ պատմության մեջ ամենալուրջն են, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացման առավել համոզիչ վկայությունն են։ «Հիմա ամենքը տեսնում են. հերքված է ռեֆորմիստների և բուրժուական գաղափարախոսների հորինած այն գլխավոր առասպելներից մեկը, թե իբր մեր օրերի կապիտալիզմը ընդունակ է ազատվելու ճգնաժամերից,— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը։— Կապիտալիզմի անկայունությունն ավելի ու ավելի ակներև է դառնում։ Կապիտալիզմը «առողջացնելու» և նրա շրջանակներում «համընդհանուր բարօրության հասարակարգ» ստեղծելու խոստումներն ակնհայտ ձախողում կրեցին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 42)։

Մի քանի տարի շարունակ կապիտալի երկրներում չի հանդարտվում ինֆլյացիայի տենդը։ Ցնցումներ են առաջացել էներգետիկ ճգնաժամից. ինֆլյացիայից, թանկությունից տուժում են հարյուր միլիոնավոր աշխատավորներ։ Միայն 1974—1975 թթ. զարգացած կապիտալիստական երկրներում սպառողական ապրանքների գները բարձրացել են գրեթե 20 տոկոսով, ըստ որում այնպիսի երկրներում, ինչպիսիք են Անգլիան, Իտալիան, թանկության աճն անցել է 20 տոկոսից, իսկ Լատինական Ամերիկայի որոշ երկրներում (օրինակ՝ Արգենտինայում) այդ գները հասել են չլսված չափերի՝ տարեկան 150—200

որոնք պրակտիկայում ակտիվորեն կիրառվում են երկկողմ և բազմակողմ հանդիպումների ու կոնսուլտացիաների, աշխատանքի փորձի փոխանակման, տեսական պրոբլեմների համատեղ մշակման և այլ ձևերով, մեծապես նպաստում են կոմունիստական շարժման համախմբմանը՝ նրա զարգացման արդի փուլում:

Վերջին տարիներին միջազգային կոմունիստական շարժման զարգացման մեջ նշանակալի ուղենիշ հանդիսացավ 1976 թ. հունիսին Բեռլինում կայացած Եվրոպայի կոմունիստական և բանվորական կուսակցությունների կոնֆերանսը: Դա Եվրոպայի եղբայրական կուսակցությունների ամենալայն ու ամենաներկայացուցչական հանդիպումն էր: Կոնֆերանսին մասնակցեցին 29 կոմունիստական և բանվորական կուսակցություններ, որոնք ներկայացնում էին ավելի քան 29 մլն կոմունիստների: Կոնֆերանսի ուշադրության կենտրոնում էին Եվրոպայում խաղաղության, անվտանգության, համագործակցության ու սոցիալական առաջընթացի հրատապ պրոբլեմները:

Եվրոպական կոմունիստների համաժողովը սահմանեց այն կոնկրետ ուղիները, որոնց միջոցով բանվոր դասակարգը, ժողովրդական զանգվածները կկարողանան ներկայիս բարենպաստ պայմանները հաջողությամբ օգտագործել Եվրոպան կայուն խաղաղության և համագործակցության մայրցամաքի վերածելու համար:

«Հանուն Եվրոպայի խաղաղության, անվտանգության, համագործակցության և սոցիալական առաջադիմության» հանրագումարային փաստաթղթում եվրոպական կոմունիստները հայտարարեցին, որ «իրենք անհրաժեշտ են համարում երկխոսությունն ու համագործակցությունը կոմունիստների և մյուս բոլոր դեմոկրատական ու խաղաղասեր ուժերի հետ... ելնում են այն բանից, ինչը իրենց միավորում է և հանդես են գալիս անվստահությունն ու արմատավորված նախապաշարմունքները վերացնելու օգտին, որոնք կարող են խոչընդոտել իրենց համագործակցությանը»:

Այդպիսի կոնստրուկտիվ քաղաքականությունը կոմունիստների նորանոր հաջողությունների գրավականն է: Եվ պատահական չէ, որ այդ քաղաքականությունն ամեն կերպ փորձում են կեղծել ու վարկաբեկել մի կողմից բուրժուական քաղաքագետներն ու պրոպագանդիստները և մյուս կողմից՝ տարբեր կարգի սոցիալ-ռեֆորմիստական, «ձախ»-օպորտունիստական, տրոցկիստական գաղափարախոսները: Դրա նոր վկայությունն էր նրանց ռեակցիան Եվրոպայի կոմունիստական և բանվորական կուսակցությունների Բեռլինի կոնֆերանսի արդյունքների նկատմամբ, արդյունքներ, որոնք, համաշխարհային առաջադեմ հասարակայնության ընդհանուր կարծիքով, արտահայտում են արդի Եվրոպայում կատարված սոցիալ-քաղաքական տեղաշարժերը:

Այս անվիճելի փաստերը ինչ-որ չափով ստիպված եղան խոստովանել սոցիալիզմի ո՛չ միայն կողմնակիցները, այլև նույնիսկ հակառակորդները: «Վերջերս Եվրոպայում տեղի ունեցած իրադարձությունները համոզիչ ցույց տվեցին,— գրում է ամերիկյան «Նյուսուիկ» ժուռնալը,— որ կոմունիստների գաղափարաքաղաքական դրույթները հսկայական ուժ են, որոնք ունակ են փոխելու աշխարհը»: Իսկ իտալական «Պոպոլո» թերթը «Հելսինկիից մինչև... Բեռլին» հոդվածում մասնավորապես նշում էր. «...Արևմտյան Եվրոպայում տեղի ունեցող պրոցեսներում կոմունիստները տեսնում են Հելսինկիի խորհրդակցության բնական ու տրամաբանական հետևանքները», որոնք, վերջին հաշվով, նշանակում են, ինչպես տրտնջում է բուրժուական այդ թերթը, «կոմունիզմի ներկայության ուժեղացում կապիտալիստական աշխարհում»:

Աշխատավորները, նրանց կազմակերպությունները, խաղաղության ու սոցիալական առաջընթացի բոլոր ջատագովները տարբեր մայրցամաքներում համերաշխ են կոմունիստների դիրքորոշումներին՝ Եվրոպայի խաղաղ ապագայի և սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի հետագա ակտիվացման գործում: Միանգամայն այլ են հակակոմունիստների արձագանքները: Դրանք, սկսած արևմտագերմանական «Շպիգել» ժուռնալից մինչև Վ. Զորգայի կամ ֆրանսիական բուրժուական փիլիսոփա Ռ. Արոնի նման «սովետագետնե-



րը», հատկապես դժգոհում են, որ կոմունիստները վճռականորեն արտահայտվել են հակակոմունիստական քաղաքականության ու գաղափարախոսության տրվող հակահարվածն ուժեղացնելու, սոցիալական առաջադիմության համար աշխատավորների մղած պայքարն առավել ակտիվացնելու օգտին:

Միևնույն ժամանակ կոմունիստների այդպիսի դիրքորոշումը չարամիտ մեկնաբանություններ առաջացրեց «ձախ» օպորտունիստական տիպի կեղծարարների, այդ թվում և տրոցկիստական հրատարակությունների կողմից: Երկու սիստեմների խաղաղ գոյակցությունն ապահովելու ու միջազգային լարվածության թուլացումը խորացնելու և ամրապնդելու նպատակով վարած քաղաքականությունն անհիմն կերպով հայտարարելով որպես «սահուն դասակարգային համագործակցության ուղիով», ոմն Իրվին Զիլբեր ամերիկյան «Գարդիան» թերթի էջերում զրպարտչորեն պնդում է, թե իբր կոմունիստները «ինչպես Սովետական Միությունում, այնպես էլ մյուս եվրոպական կուսակցություններում հրաժարվել են մարքսիզմ-լենինիզմից», թե իբր նրանք «պատմական փոշիների տակից դուրս են հանել ու բարձրացրել կլասիկ սոցիալ-դեմոկրատիայի դրոշը»:

Սակայն, քաջ հայտնի է, որ լավագույն, խաղաղ ապագայի և ժողովուրդների անվտանգության համար պայքարող պրոլետարական շարժման նպատակների իրագործման ասպարեզում կոմունիստների ծավալած ակտիվ գործունեության կարևորագույն ուղղություններից մեկն էլ հենց նրանց հետևողական պայքարն է հակամարքսիզմի դեմ, նրանց հարձակումը հակակոմունիստական ռեակցիոն քաղաքականության և գաղափարախոսության դեմ, նրանց անհաշտվողականությունը աջ սոցիալ-ռեֆորմիստական պարագլուխների կապիտուլյանտական, պրոկապիտալիստական գաղափարախոսության և «դասակարգային համագործակցության» նրանց կոնցեպցիաների ու քաղաքականության նկատմամբ:

Եվրոպական կոմկուսակցությունների Բեռլինի համաժողովը վերստին հաստատեց, որ մարտնչող հակակոմունիզմը վնասում է խաղաղության և սոցիալական առաջընթացի համար ծավալված շարժման զարգացմանը, որ հակակոմունիզմը եղել ու մնում է որպես իմպերիալիստական և ռեակցիոն ուժերի գործիք՝ ո՛չ միայն կոմունիստների, այլև մյուս դեմոկրատների ու դեմոկրատական ազատությունների դեմ նրանց մղած պայքարում: «Այդ ուժերը,— ինչպես նշվում է Բեռլինի կոնֆերանսի հանրագումարային փաստաթղթում,— կամպանիաներ են սանձազերծում կոմունիստական կուսակցությունների, սոցիալիստական երկրների դեմ, և առաջին հերթին՝ Սովետական Միության, սոցիալիզմի ու առաջադիմության ուժերի դեմ, կամպանիաներ, որոնց նպատակն է վարկաբեկել կոմունիստների քաղաքականությունն ու իդեալները ժողովրդական մասսաների աչքում. թույլ չտալ բանվորական շարժման միասնություն և դեմոկրատական ու ժողովրդական ուժերի համագործակցություն: Ժողովրդական ուժերի՝ առաջադիմության և դեմոկրատական զարգացման ձգտման շահերը պահանջում են մեկուսացնել ու պարտության մատնել հակակոմունիզմը»:

Հակակոմունիզմի ակտիվացումը կապիտալիստական աշխարհում նպատակ ունի տատանվող ոչ պրոլետարական տարրերին, ամենից առաջ մանր բուրժուազիային վախեցնել «կոմունիստական դիկտատուրայի», «անարխիայի» վտանգով և այլն: Այն ռեակցիայի սովորական մեթոդն է, որն իր համար վտանգավոր պահերին դիմում է ոչ պրոլետարական զանգվածների թերզարգացած քաղաքական գիտակցությանը, ձգտում նրանց ոտքի հանել աշխատավորների իսկական շահերի համար պայքարող ուժերի դեմ:

Հակակոմունիստների ճիգերն ակտիվանում են առանձնապես ներկա իրադրության մեջ, երբ կոմունիստական կուսակցությունները նորանոր նվաճումներ են ձեռք բերում, ամրապնդում դիրքերն իրենց երկրների քաղաքական կյանքում, դառնում աշխատավորների մասսայական կուսակցություններ: Այսպես, վերջին տարիներին ակնառու հաջողությունների է հասել Իտալիայի կոմունիստական կուսակցությունը, որն իր շարքերում ունի 1 մլն 800 հազար

անդամ։ Այսօր երկրի 630 դեպուտատներից 229-ը կոմունիստներ են, 315 սենատորներից կոմունիստ են 116-ը։ 1975 թվականի հունիսին իշխանության տեղական մարմինների ընտրություններում կոմկուսակցությունը ստացավ բոլոր ձայների 33,4 տոկոսը։ Մեծ հաջողություններ ունի ֆրանսիական կոմունիստական կուսակցությունը։ Իրենց դիրքերն ուժեղացնում են Ֆինլանդիայի, Պորտուգալիայի, Դանիայի, ԳՖՀ-ի և մյուս երկրների կոմունիստները։ Այժմ այդ երկրներում ստեղծվել է քաղաքական այնպիսի իրադրություն, երբ կառավարող շրջանները այլևս չեն կարող անտեսել կոմունիստական կուսակցությունների կարծիքը, որն արտահայտում է աշխատավորական լայն զանգվածների տրամադրությունները։

Հակակոմունիզմի աճն ուղեկցվում է նաև բանվոր դասակարգի և աշխատավորների մյուս խավերի վրա մոնոպոլիաների ճնշման ուժեղացմամբ։ Մոնոպոլիաներն այստեղ փորձեր են անում սառեցնել աշխատավարձը, սահմանափակել արհմիությունների իրավունքները, հաճախակի ռեպրեսիաներ կիրառել գործադուլների և աշխատավորների մյուս ելույթների մասնակիցների դեմ։ Բուրժուազիան ձգտում է բանվոր դասակարգին ստիպել՝ վճարելու տնտեսական այն դժվարությունների համար, որոնք ծնունդ են առել վալյուտային, էներգետիկ, հումքային ճգնաժամերի և արտադրության՝ կապիտալիզմի համար սովորական ճգնաժամային տատանումների հետևանքով։

Կապիտալիստական բոլոր երկրներում աշխատավորները պայքարում են իրենց կենսական շահերի պաշտպանության համար, բազմամյա դասակարգային մաքառումներով աշխատավորների ձեռք բերած նվաճումների վրա մոնոպոլիաների կատարած հարձակումների դեմ։ Բանվորական և դեմոկրատական շարժման վերելքը պակաս անհանգստություն չի պատճառում իմպերիալիստական բուրժուազիային։ Դասակարգային նոր մարտերի հանդեպ նրա տագնապն արտահայտվում է կապիտալի աշխարհում «սոցիալ-տնտեսական և քաղաքական կայունությունն ապահովելու» հնարավորության առթիվ։ ՆԱՏՕ-ի ղեկավար շրջաններում ուժեղանում են երկյուղները աշխատավոր զանգվածների ակտիվության բարձրացման, կոմունիստական կուսակցությունների և ձախ արհմիությունների ազդեցության աճի, ինչպես նաև այն կապակցությամբ, որ ինչպես նշել է ամերիկյան մոնոպոլիաների «Ուոլլ-ստրիտ ջոռնել» թերթը, «ինֆլյացիայի, տնտեսական անկման և էներգետիկ ճգնաժամի կործանարար զուգակցումը վերջին երկու տարում բոլոր երկրներում խարխլեց ընտրողների հավատը տնտեսական պրոբլեմները ևս հաղթահարելու՝ կառավարությունների ունակության նկատմամբ»։

Կապիտալի երկրներում ուժեղանում է գործադուլային պայքարը, որին մասնակցում են ամենատարբեր սոցիալական խմբեր ու խավեր ներկայացնող միլիոնավոր մարդիկ։ Այսպես, 1971—1975 թթ. կապիտալիստական աշխարհում գործադուլային մարտերին մասնակցել է 315 մլն մարդ, որ 42 մլն մարդով ավելի է, քան նախորդ հնգամյակում։

60—70-ական թվականների գործադուլային շարժման աճի դինամիկան վկայում է այդ վերելքի հարաճուն տենդենցի մասին։ Անհրաժեշտ է նշել այն հանգամանքը, որ վերջին տարիների գործադուլային շարժման վերելքը տեղի է ունեցել աշխատավորների համար ծայրահեղ անբարենպաստ պայմաններում։ Նախ, կապիտալիստական բազմաթիվ երկրներում նկատվում էր տնտեսական վատ կոնյունկտուրա, որի հետևանքով մոնոպոլիաները սովորաբար հրաժարվում են զիջումներ անել աշխատավորներին, բացի այդ, կասեցվում է արհմիությունների պայքարը աշխատավարձի բարձրացման համար։ Երկրորդ, այդ տարիներին չտեսնված մասշտաբների հասավ գործազրկությունը, որի պայմաններում աշխատավորները կանգնում են մասսայական լոկաուտների վտանգի առջև, քանի որ ձեռնարկատերերը կարող են գործադուլավորներին հեշտությամբ փոխարինել գործազուրկներով։ Երրորդ, շատ երկրներում խիստ ուժեղացել են պետության ռեպրեսիվ-պատժիչ գործունեությունը, գործադուլների և աշխատավորների պայքարի մյուս ձևերի արգելքները, ինչպես նաև գաղափարական ճնշումը բանվոր դասակարգի վրա։



Այս ամենը որոշ դժվարություններ ստեղծեց աշխատավորների մասսայական կազմակերպությունների՝ արհմիությունների համար գործադուլային շարժումը կազմակերպելու գործում, բայց շարժումը ո՛չ միայն չթուլացավ, այլև, ընդհակառակը, ամրապնդվեց ու աճեց։ Այդ պատճառով գործադուլային պայքարի վերելքը որակական տեղաշարժ առաջացրեց բանվորական և արհմիութենական շարժման զարգացման մեջ։

Զարգացած կապիտալիզմի բոլոր երկրներում գործադուլային շարժման բուռն աճը վկայում է, որ բանվոր դասակարգի խոշոր կազմակերպված ջոկատներ են ներգրավվում դասակարգային մարտերի մեջ, որ շարունակ սրվում է սոցիալական պայքարը։ Եթե 60-ական թվականներին գործադուլային շարժումը հիմնական կապիտալիստական երկրներում զգալի չափով զարգանում էր արտոնվելով ռեֆորմիստական արհմիությունների ղեկավարության կողմից, ապա 70-ական թվականների սկզբին գործադուլային պայքարն ավելի սրվեց, դարձավ առավել կազմակերպված։

Կապիտալի երկրներում դասակարգային պայքարի ներկա փուլի առանձնահատկությունն է՝ աշխատավորների ելույթների աննախընթաց մասսայականությունը, գործադուլային մարտերի սրությունը, իր իրավունքներն ու շահերը պաշտպանելու գործում բանվոր դասակարգի ցուցաբերած հաստատակամությունն ու հետևողականությունը։ «Ծավալված դասակարգային մարտերում ավելի ու ավելի է նկատվում այն տենդենցը, որի վրա ժամանակին ուշադրություն են դարձրել կոմունիստները, այն է՝ տնտեսական պայքարը վերաճում է պետական-մոնոպոլիստական տիրապետության ամբողջ սիստեմի դեմ ուղղված ելույթների» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 3, էջ 657)։

Գործադուլային շարժման ներկա վերելքի բնորոշ գիծն է նաև «սոցիալական աշխարհագրության» ընդարձակումը, որը նոր հեռանկարներ է բացում մոնոպոլիաների դեմ մղվող պայքարում աշխատավորական զանգվածների միասնության պայքարն ուժեղացնելու համար։ Վերջին տարիների գործադուլային շարժման մյուս բնորոշ գիծն է արհմիությունների պայքարի ձևերի ու մեթոդների մեծ բազմազանությունը, աշխատանքի դադարեցման սերտ զուգակցումը մասսայական ցույցերի, միտինգների ու ժողովների հետ։ Այդ ժամանակամիջոցում գործադուլներն ավելի հաճախ են ուղեկցվել ձեռնարկությունների գրավումով։ Այսպես, բանվորների կողմից ձեռնարկությունների գրավման դեպքեր եղել են Իտալիայում, Անգլիայում, Ֆրանսիայում և այլ երկրներում։

Հակաբանվորական օրենսդրության դեմ բանվոր դասակարգի և նրա կազմակերպությունների ելույթները լայն թափ են ստացել ԱՄՆ-ում, Անգլիայում, Կանադայում, Ավստրալիայում, Դանիայում և ուրիշ շատ երկրներում։ Այդ բոլոր ելույթներում զգացվում է աշխատավորների առաջավոր ավանգարդի՝ կոմունիստական և բանվորական կուսակցությունների նպատակասլաց գործունեությունը, որոնք հետևողականորեն հանդես են գալիս ամենալայն ժողովրդական զանգվածների շահերի ու իրավունքների պաշտպանությամբ, բոլոր հակամոնոպոլիստական, դեմոկրատական ուժերի գործողությունների միասնության օգտին։

Հեղափոխական պրոցեսը կապիտալիստական երկրներում անբաժանելի է համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի ու կապիտալիզմի հակամարտությունից, խաղաղության և սոցիալիզմի օգտին ուժերի հարաբերակցության հետագա փոփոխումից, հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականության իրականացման ռեալ հաջողություններից։ Ուստի, կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի հակամոնոպոլիստական գործողությունների միասնությունը սոցիալիստական երկրների հետ, համատեղ պայքարը հանուն խաղաղության, լարվածության թուլացման և սոցիալական պրոգրեսի՝ կոմունիստական կուսակցությունների համար կապիտալիստական աշխարհում հեղափոխական առաջադիմության կարևոր նախադրյալներ են։ Այդ միասնությամբ էլ կոմունիստները շարունակում են պայքարել հանուն մարդկության խաղաղ ապագայի, դեմոկրատիայի և սոցիալիզմի։

# ՀԱՅՈՑ ՌՈՒՍԱԿԱՆ ԿՈՂՄՆՈՐՈՇՈՒՄԸ ԵՎ ԱՐԵՎՄՏԱԵՎՐՈՊԱԿԱՆ ԴԻՎԱՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ

Ջ. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՀԱՐՅՈՒՐ ՏԱՐԻ ԱՌԱՋ, 1877 թ. ապրիլի 12-ին, սկըսվեց ռուս-թուրքական պատերազմը, որը բալկանյան ժողովուրդների հակասուլթանական ազգային-ազատագրական շարժումների բուռն վերելքի և արևելյան հարցում միջազգային հակասությունների սրման հետևանք էր: Պատերազմի նախօրյակին սլավոնական ժողովուրդները՝ բուլղարները, մակեդոնացիները, բոսնիացիներն ու չեռնոգորցիները ոտքի էին ելել՝ տապալելու թուրքական դարավոր անարգ լուծը, նվաճելու ազատ ապրելու իրենց իրավունքը: Նորից իր ավանդական դերի մեջ էր արևմտաեվրոպական դիվանագիտությունը, որը փորձում էր բալկանյան ճգնաժամը, արևելյան հարցն օգտագործել հօգևվարք ապրող Օսմանյան կայսրության ժառանգությունը գաղութատիրական քաղաքականության շահերին համապատասխան տնօրինելու համար:

Բալկանյան ճգնաժամն ու ռուս-թուրքական պատերազմը հսկայական դեր խաղացին հայ ժողովրդի հակասուլթանական ազգային-ազատագրական պայքարի վերընթացի, նրա քաղաքական ինքնաճանաչման, սեփական իրավունքները պաշտպանելու չափազանց բարդ պրոցեսում: Ռուսական զենքի օգնությամբ Արևմտյան Հայաստանն ազատագրելու, Արևելյան Հայաստանի հետ միավորվելու, միասնական հայրենիքի մեջ համախմբվելու ձգտումը զորեղ լիցք ստացավ, թևակոխեց իր զարգացման նոր փուլը: Միջազգային դիվանագիտությունն առաջին անգամ արծարծեց հայոց հարցը: Ամբողջ խորությամբ նորից դրսևորվեց հայ ժողովրդի ռուսական կողմնորոշումը:

1878 թվականի Բեռլինի կոնգրեսը, մեծ տերությունների ներկայացուցիչների ստորագրած պայմանագրի 61-րդ հոդվածը հայ ժողովրդին ոչինչ չտվին: Թուրքական դժնի տիրապետությունից արևմտաեվրոպական դիվանագիտության գործողությունների օգնությամբ փրկվելու հույսը, որ փայփայվել էր տասնյակ տարիների ընթացքում, ի դերև ելավ: Այսօր էլ արտասահմանում դեռևս շարունակվում են հարյուրամյա իրադարձությունների քննարկումները սփյուռքահայ մամուլի էջերում՝ հայ ժողովրդի համար որոշիչ դեր խաղացած անցքերն ու դեպքերը բացատրելով դիպվածով, բուրժուական դիվանագիտու-



թյան այս կամ այն գործչի բարյացակամությամբ կամ չկամությամբ: Իրականում, աշխարհի վերաբաժանման համար իմպերիալիստական տերությունների մրցապայքարը հաշվի չէր նստում ճնշված ժողովուրդների շահերի հետ: Ժամանակ առ ժամանակ մեծ տերությունների կառավարություններն իրենք էին դաշնակցում սուլթան Աբդուլ Համիդ 2-րդի կամ երիտասարդ թուրքերի հետ՝ ղեկավարվելով իրենց շահամոլական նկատառումներով:

Հայ ժողովրդի գոյատևման ու փրկության դժվարին պրոցեսը աղերսվեց ռուսաստանյան պրոլետարիատի հեղափոխական պայքարի հետ, որի հաղթանակի շնորհիվ մեր ժողովուրդը վերահաստատեց իր պետականությունը, ընթացավ սոցիալիստական վերածննդի ուղիով:

***

Պատերազմը ծավալվեց բալկանյան և կովկասյան ռազմաճակատներում, ընդգրկեց հսկայական տարածություններ և հարյուր հազարավոր մարդկանց: Այն տևեց տասը ամիս: Ռուս զինվորը Շիպկայի և Պլևնայի համար մղված մարտերում անօրինակ խիզախության և արիության էջեր գրեց ռուսական զենքի հաղթանակների տարեգրության մեջ, արյան գնով ազատություն ավետելով բուլղար ժողովրդին: «Իր ազգային-ազատագրությունը Բուլղարիան ստացել է ռուս ժողովրդից»,— գրել է բուլղար ժողովրդի մեծ զավակ Գեորգի Դիմիտրովը: Գեներալ Գուրկոյի զորախումբը 1877 թ. դեկտեմբերին հաղթահարեց Բալկանյան լեռնաշղթան և 1878 թ. հունվարի 4-ին գրավեց Սոֆիան: Հունվարի կեսերին, Ֆիլիպպոլիսի տակ Սուլեյման փաշայի թուրքական զորախմբի ծանր պարտությունից հետո, ռուսական բանակը գրավեց Ադրիանապոլիսը և ընդհուպ մոտեցավ Օսմանյան կայսրության մայրաքաղաքին:

Փոքրասիական կամ կովկասյան ռազմաճակատում նույնպես ռուսական բանակը հաջողության հասավ: 1877 թ. նոյեմբերի 18-ին Կարսը կապիտուլյացիայի ենթարկվեց, և ճանապարհը դեպի Էրզրում բաց էր ռուսական զորքերի առջև: Արևելյան ճակատի թուրքական բանակի հրամանատար Մուխթար փաշան, որ նախօրյակին պարծեցել էր մի քանի օրվա ընթացքում գրավել Երևանի նահանգը, հասնել Թիֆլիս, գլխովին ջախջախվեց:

***

Պատերազմի ժամանակ անգլիական կառավարությունն ամեն ինչ անում էր սուլթանական Թուրքիային հաջողություն ապահովելու համար: Անգլիան ռազմական և ֆինանսական օգնություն էր ցույց տվել թուրքական կառավարությանը, նրա բանակը զինել և հանդերձավորել նորագույն զենքով և ռազմական տեխնիկայով: Թուրքական բանակում ծառայում էին անգլիացի սպաներ: Սա անգլիական ավանդական քաղաքականության շարունակությունն էր: Անգլիայի պրեմիեր մինիստր Դիզրաելին պատերազմը Ռուսաստանի դեմ օգտագործելու, անգլիական գաղութատիրական պլաններն իրականացնելու, ճնշված ժողովուրդների ազատագրումը խոչընդոտելու քաղաքականություն էր վարում: Անգլո-թուրքական գործակցությունը ճիգ ու ջանք չէր խնայում Անդրկովկասում ռուսական ազդեցության դեմ մեքենայություններ սարքելու համար: Սակայն Անդրկովկասի ժողովուրդները կյանքի փորձով ըմբռնել էին Ռուսաստանի բարերար դերի և արևելյան բռնակալությունների վնասակարության տարբերությունը: Նրանք ռուսական իշխանության հովանու տակ էին փնտրում իրենց ապահով կյանքի երաշխիքը:

Պատերազմի ժամանակ արևմտահայ աշխատավորական զանգվածները նոր փորձությունների ու տառապանքների ենթարկվեցին: Հակահայկական խժդժությունները, թշնամական գործողություններն սկիզբ էին առել դեռ մինչև պատերազմը: Ինչպես գրում է Ս. Քիշմիշևը պատերազմի նկարագրությանը նվիրված իր գրքում, թուրքական կառավարողները, համոզվելով, որ տանուլ են տալիս Բալկաններում, գիտակցում էին, որ իրենց վերջին ապաստանը մնալու է Անատոլիան, դրա վրա էին կենտրոնացնում իրենց ուշադրությունը:

պատասխան մղեց նոր գործողությունների, թեև նրա քայլերը լինելու էին բեկբեկուն և փոփոխական։

***

Թուրքական բանակը պարտված էր։ Ռուսական բանակը հաղթական գիրք էր բռնել Կ. Պոլսի մատույցներում։ Թվում էր, թե սուլթանների տիրապետության խորտակումն օրերի հարց է։ Աբդուլ Համիդը հաշտություն էր հայցում։ Բայց դա անում էր խորամանկորեն, քաշքշուկով՝ արևմտաեվրոպական մայրաքաղաքներից, մասնավորապես, Լոնդոնից միջամտություն ակընկալելով։ Փետրվարի 9-ին «Մասիս» թերթում Հակոբ Պարոնյանը նկատում էր, որ «Ռուսիան իր հապաղումներովը մեծ սխալ կգործի»։ Սուլթանը հույսը դրել էր միջպետական հակասությունների սրման, անգլո-ռուսական բախման հնարավորության վրա։

Վերջապես զինադադարը կնքվեց Ադրիանապոլսում, իսկ հաշտության պայմանագիրը՝ Սան-Ստեֆանոյում (1878 թ. մարտի 3-ին)։ Սան-Ստեֆանոյի պայմանագիրն անվանվեց նախնական, «պրելիմինար», որովհետև արևմտաեվրոպական դիվանագիտությունը պնդում էր նրանում արծարծված խնդիրները քննության առնել համաեվրոպական կոնգրեսում։

Այդ պայմանագրով Բարձր Դուռը ճանաչում էր Չեռնոգորիայի, Ռումինիայի, Սերբիայի անկախությունը։ Ստեղծվում էր ինքնավար Բուլղարիա՝ իր կառավարությամբ և բանակով։ Բարենորոգումներ էին նախատեսվում Բոսնիայում և Հերցեգովինայում։ Թուրքական կառավարությունը որոշակի պարտավորություններ էր ստանձնում՝ հարգելու Կրետե կղզու, Էպիրոսի և Թեսալիայի բնակչության իրավունքները։ Սա ռուսական զենքի հաղթանակի ամենամեծ արդյունքն էր. բալկանյան ժողովուրդների երկարամյա պայքարը պսակվում էր հաջողությամբ։

Պայմանագրում հատուկ կետ զետեղվեց Հայաստանի մասին։

Պայմանագրի 16-րդ հոդվածում ասված էր. «Նկատի առնելով այն, որ ռուսական զորքերի դուրս բերումը նրանց կողմից գրավված Հայաստանի՝ Թուրքիային վերադարձվելիք վայրերից կարող է այնտեղ առիթ տալ բախումների և բարդությունների, որոնք երկու պետությունների բարի հարաբերությունների վրա կունենան վնասակար ազդեցություն,Բարձր Դուռը պարտավորվում է անհապաղ կենսագործել հայաբնակ մարզերի տեղական կարիքներից հարուցվող բարելավումներ ու բարենորոգումներ և զերծ պահել հայերի անվտանգությունը քրդերից ու չերքեզներից»։

Այս հոդվածը էականորեն տարբերվում էր եվրոպական Թուրքիայի երկրամասերին վերաբերող ձևակերպումներից։ Այստեղ բառ անգամ չկար ինքնավարության, կոնկրետ անելիքների մասին։ Մինչդեռ Բալկաններին վերաբերող հոդվածների բովանդակությունը կոնկրետ սահմանումներ էր պարունակում։ 16-րդ հոդվածի սահմանումը հետևանք էր այն բանի, որ հայկական հարցը դիվանագիտության մարզում հարուցվեց հանպատրաստից։ Ռուս դիվանագետ Իգնատևը դա բավարար էր համարում, ասելով, թե հայերի համար չափազանց նշանակալից էր, որ Օսմանյան կայսրության գոյության ամբողջ ընթացքում առաջին անգամ նրանց մասին հիշատակվեց միջազգային դաշնագրի մեջ, իսկ Բ. Դուռը հրապարակավ ճանաչեց հայ ազգի գոյությունը ասիական Թուրքիայում։

Սան-Ստեֆանոյի պայմանագրով Թուրքիան պարտավորվում էր Ռուսաստանին 1 միլիարդ 410 միլիոն ռուբլու ռազմատուգանք վճարել։ Սակայն պայմանագրի 19-րդ հոդվածում ասված էր. «Նկատի առնելով Թուրքիայի ֆինանսական դժվարությունները և համակերպվելով նորին մեծության սուլթանի ցանկությանը, ամենայն ռուսաց կայսրը համաձայնվում է... գումարների մեծ մասի վճարումը փոխարինել... տերիտորիալ զիջումներով»։ Այդ հոդվածի հիման վրա 1 միլիարդ 100 միլիոն ռուբլու դիմաց Ռուսաստանին էին անցնում Բեսարաբիայի մի մասը, Արդահանը, Կարսը, Բաթումը, Բայազեդը և մինչև Սողանլուղ հասնող տերիտորիան՝ Օլթի, Արդանուշ, Արդվին,



Խումար, Կաղզվան, Ալաշկերտ քաղաքներով ու վայրերով։ Գումարի մնացած մասի վճարումը թողնվում էր երկու կողմերի միջև հետագա բանակցություններին և համաձայնությանը։ Իսկ Էրզրումը վեց ամիս պետք է մնար որպես գրավական ռուսական բանակի ձեռքում, մինչև որ թուրքերը վճարեին ռազմատուգանքը։

Թուրքական ներկայացուցիչները, սուլթանի համաձայնությամբ, առաջարկեցին ռազմատուգանքի մի մասի դիմաց տերիտորիալ զիջումներ անել։ Սակայն, եթե Դոբրուջան նրանք զիջեցին ոչ մեծ դիմադրությունից հետո, ապա ասիական Թուրքիայի տերիտորիալ հարցերում ռուս դիվանագետները հանդիպեցին թուրքական լիազորների համառությանը։ Իգնատևը գրում է, որ վերջիններս ղեկավարվում էին անգլիացիների խորհուրդներով, որոնք Բայազեդի վրայով անցնող քարավանային ճանապարհը Ռուսաստանին չթողնելու համար էին պայքարում։ Նա իր հուշերում նկարագրել է, թե ինչպիսի դժվարությամբ հաջողվեց Սան-Ստեֆանոյի պայմանագրի մեջ մտցնել Կարսը, Բայազեդը և Բաթումը Ռուսաստանին հանձնելու մասին կետը։

Սան-Ստեֆանոյի պայմանագիրը ելակետ էր ընդունում երկու փաստ. տեղական կարիքները պահանջում էին բարելավում և ռեֆորմներ. հայկական բնակչությանը սպառնում էին քրդերն ու չերքեզները։ Այս երկու փաստին համապատասխան Թուրքիան կրկնակի միջազգային պարտավորություն էր ստանձնում Ռուսաստանի նկատմամբ՝ իրականացնել անհրաժեշտ բարենորոգումներ և բարելավումներ. ապահովել հայերի անվտանգությունը։ Այս պարտավորությունը պետք է կատարվեր «անհապաղ»։ Սակայն 16-րդ հոդվածը չէր հիշատակում Ռուսաստանի կողմից հսկողության եղանակը պարտավորության իրականացման նկատմամբ։ 16-րդ հոդվածի իմաստն այն էր, որ Արևմտյան Հայաստանը Ռուսաստանի ազդեցության ոլորտ էր դառնում, և հայ բնակչությունն էլ նրա հովանավորության տակ էր դրվում՝ սուլթանի ակամա հավանությամբ։

Հոդվածը չէր որոշում, թե որո՞նք էին հայկական նահանգների սահմանները, ո՞վ պետք է ճշտեր տեղական կարիքները, բարենորոգումների բնույթը և ընդգրկումը։ Այստեղից պարզ էր, որ ռուսական կողմի առաջնահերթ խնդիրն էր մնալ գրավված վայրերում, զորքի դուրս բերումը պայմանավորել բարենորոգումներ իրականացնելու անհրաժեշտությամբ։ 16-րդ հոդվածը մի կռվան էր, մի հիմք, որպեսզի ռուսական բանակը չհեռանար գրավված հայկական նահանգներից։ Այն Ռուսաստանին հիմք էր տալիս ոչ միայն միջամտելու Փոքր Ասիայի քրիստոնեական բնակչության նկատմամբ Բ. Դռան իրականացրած քաղաքականությանը, այլև ցուցադրում էր Եվրոպային, որ շահագրգռված է ոչ միայն սլավոնների, այլև բոլոր քրիստոնյաների վիճակի բարելավումով։

16-րդ հոդվածի առավելությունն այն էր, որ թուրքական կողմը պաշտոնապես ճանաչում էր Օսմանյան կայսրության սահմաններում «Հայաստան» երկրի գոյությունը։ Ռուսաստանը հանդես էր գալիս որպես հայ ժողովրդի պաշտոնական հովանավոր։ Արձանագրելով ռուսական զորքերի հեռանալուց հետո հայերի համար ստեղծվելիք հնարավոր դժվարություններն ու բարդությունները, ռուսական կառավարությունը, հոգատարություն հանդես բերելով արևմտահայության նկատմամբ, միջազգային իրավունքի ուժ էր հաղորդում Բ. Դռան կողմից «անհապաղ» բարելավումներ ու բարենորոգություններ իրականացնելու անհրաժեշտությանը։ Ռուսաստանի հարևանության, հզորության շնորհիվ, միջպետական ախոյանության բացակայության պայմաններում, ինչ խոսք, որ ռուսական կառավարության հովանավորությունը բարերար ազդեցություն կունենար արևմտահայության հետագա ճակատագրի վրա։

16-րդ հոդվածը որոշակի բարիք էր հայության համար։ Արևմտահայաստանի մի խոշոր հատվածի միացումը Ռուսաստանին հնարավորություն էր ընձեռում հայ ժողովրդին՝ աճելու և զարգանալու Ռուսաստանի հովանու տակ։

Սան-Ստեֆանոյի պայմանագրի 16-րդ հոդվածի առթիվ «Մասիս»-ը 1878 թ. մարտի 7-ին գրում էր, որ այն «ամեն ազգասեր հայոց խնդակցության արժանի է։ Կա՞ երկիր մը, որ այնչափ թշվառություն ու հարստահա-

Հիրավի, հզոր ազգային-ազատագրական զինված շարժման, հավաքա-
կան ուժի բացակայությունն ի չիք դարձրեց հաջողությունը։ Հայոց պատվի-
րակությունը խնդրատուի, աղերսողի, այլ ոչ թե պահանջողի, մաքառողի դե-
րում էր։ Բիսմարկն աներկմիտ դիտողություն էր արել Խրիմյան Հայրիկին,
թե «որևէ քաղաքական իրավունք պահանջելու համար պետք է ներկայանալ
դեսպանաժողովին ոչ թե խոնարհ աղերսագրով, այլ Չեռնոգորիայի ներկա-
յացուցչի պես հաղթական սրի վրա կռթնած» («Մուրճ», Թիֆլիս, № 2, 1907,
էջ 65)։ Բեռլինի կոնգրեսում Անգլիայի արտաքին գործերի մինիստր Սոլս-
բերին թուրքական լիազոր-ներկայացուցիչների հետ ձեռք-ձեռքի տված՝ պըն-
դում էին վերանայել 16-րդ հոդվածը, ապացուցում էին հայերի շահերի տե-
սակետից եվրոպական տերությունների կոլեկտիվ երաշխիքների «արդյունա-
վետությունը»։ Իրականում, «անգլիական պատվիրակությունը,— խոստո-
վանում է Լլոյդ Ջորջը,— հայկական հարցն օգտագործում էր միայն Ռուսաս-
տանի դեմ պայքարի և Թուրքիայում իր դրությունն ամրապնդելու համար»
(Л. Джордж, «Правда о мирных договорах», т. II, стр. 390, М.,
1957)։

Ռուսական լիազորները պահանջում էին հայերին վերաբերող հոդվածով
նախատեսվող բարենորոգումներ գործադրել մինչև ռուսաց զորքերի դուրս-
բերումը։ Սակայն Դիզրաելին վճռականապես առարկեց։ Նա խոսում էր
Ասիայում Բ. Դռան իշխանության և հեղինակության խարխլման մասին,
պաշտպանում հայերի վրա սուլթանի իշխանության պահպանումը։

Վերջապես ձևակերպվեց Սան-Ստեֆանոյի 16-րդ հոդվածին փոխարինող
Բեռլինի պայմանագրի 61-րդ հոդվածը. «Բարձր Դուռը պարտավորվում է
առանց հապաղման իրագործել հայաբնակ մարզերում տեղական կարիքնե-
րից հարուցված բարելավումներն ու բարենորոգումները և ապահովել հայերի
անվտանգությունը չերքեզներից և քրդերից։ Բարձր Դուռը տերություններին
պարբերաբար կհաղորդի այն միջոցների մասին, որոնք ինքը ձեռք է առել
այդ նպատակի համար, իսկ տերությունները կհսկեն դրանց կիրառմանը»։

Արևմտաեվրոպական դիվանագիտությանը հաջողվեց Ռուսաստանին
զրկել Հայաստանի գործերը մենաշնորհաբար տնօրինելու իրավունքից։ Հայ-
կական հարցն Օսմանյան կայսրության ներքին խնդրից, ռուսական զենքի
հաղթանակի շնորհիվ, Ռուսաստանի հովանավորությամբ լուծվելու հնարա-
վորությունից վերածվում էր միջազգային հարցի, վերածվում եվրոպական
դիվանագիտության զբաղմունքի առարկայի։ Բեռլինում հայոց պատվիրակու-
թյունն ուզում էր որոշ բան ավելի ստանալ, քան այն, ինչ տալիս էր 16-րդ
հոդվածը։ Փոխանակ լրացուցիչ որևէ բան ստանալու, ավելին կորցրվեց, քան
արդեն առկա էր Ռուսաստանի հովանավորության շնորհիվ։ Նույն Լ. Ջորջը
խոստովանել է. «Եթե չլիներ մեր չարաբաստիկ միջամտությունը, ապա հա-
յերի մեծամասնությունը 1878 թվականի Սան-Ստեֆանոյի պայմանագրով
անցած կլիներ ռուսական դրոշի պաշտպանության տակ» (նշվ. աշխ., էջ 390)։

«Բեռլինի տրակտատը,— կարդում ենք ՍՍՀՄ արտաքին գործերի մի-
նիստր Ա. Ա. Գրոմիկոյի խմբագրությամբ լույս տեսած Դիվանագիտության
պատմություն գրքի երկրորդ հատորում,— հայ ժողովրդի զգալի մասը թողեց
թուրքերի լծի տակ։ Պատմությունը ցույց տվեց, որ կապիտալիստական տե-
րությունների այդ որոշումը ճակատագրական եղավ թուրքահայերի համար.
դա նրանց մատնեց ֆիզիկական ոչնչացման» (էջ 333)։

***

Ռուս-թուրքական պատերազմում ռուսական զենքի տարած հաղթանակի,
բալկանյան ժողովուրդների հակաթուրքական ազգային-ազատագրական պայ-
քարի բուռն պոռթկումների վերընթացը շրջափակվեց, արգելակվեց Բեռլինի
կոնգրեսի որոշումներով։ Բեռլինի կոնգրեսը կամայական մոտեցում ցուցա-
բերեց բալկանյան ժողովուրդների բնականոն ձգտումներին։ Բուլղարիան
մնաց մասնատված։ Բոսնիան և Հերցեգովինան ընկան Ավստրո-Հունգարիայի
իշխանության տակ։



Եվրոպական տերությունների բուրժուա-կալվածատիրական կառավարու-
թյուններն իրենց կամքն էին թելադրում ժողովուրդներին։ Այդպիսին էին
դարաշրջանի հատկանշական պայմանները, այդպիսին էր ուժերի փոխհարա-
բերությունը։ Բուրժուական առաջադիմական, ազգային-ազատագրական և դե-
մոկրատական շարժումների դարաշրջանում երկարատև, հոգնատանջ, բայց
և համառ կռիվների, անթիվ ու անհամար զոհերի միջոցով ժողովուրդները
թոթափում էին օտարերկրյա տիրապետությունների լուծը, գրոհում միջնա-
դարի ամրոցները, բայց արդյունքի տնօրինմանը հավակնում էին աշխարհի
հզորները։ Նրանք դիվանագիտությամբ ու ռազմական ուժով ասպարեզ էին
իջնում իրենց տնտեսական ու քաղաքական շահերին համապատասխան տե-
րիտորիաները վերաձևելու, ազգային և էթնիկական սկզբունքները ոտնահարե-
լու միջոցով ազդեցության ոլորտներ հաստատելու, իմպերիալիստական քա-
ղաքականություն իրականացնելու համար։

Թուրքական լծից արևմտահայության ազատագրման հարցն աղերսվեց
միջազգային դիվանագիտությանը, արևմտաեվրոպական իմպերիալիստական
տերությունների քաղաքականությանը։

Սան-Ստեֆանոյի և Բեռլինի պայմանագրերով, համապատասխանաբար
դրանց 16-րդ և 61-րդ հոդվածներով սկիզբ առավ հայկական հարցի դիվա-
նագիտական պատմությունը։ Սրանցով սկիզբ դրվեց հայ հասարակական-
քաղաքական կյանքում եվրոպական դիվանագիտության օգնությամբ թուր-
քական լուծը թոթափելու, ժողովրդի միավորումն իրականացնելու, սեփա-
կան պետականություն ստեղծելու մտայնությանն ու գործելակերպին, որ շա-
րունակվեց մինչև առաջին համաշխարհային պատերազմն ու դրա ավարտը։
Այդ համաձայնագրերի հոդվածները, դրանց վրա խարսխված տեսություններն
ու գործելակերպը, սպասումներն ու նախագծումները տասնամյակներ շարու-
նակ օրորելու էին հայկական ազգային ու ազգայնական կուսակցություններին,
նրանց հետևից ընթացող մարդկանց, թվալու էին իրագործելի, բայց մնալու
էին և մնացին անօգուտ թղթի կտորներ՝ բացի վնասից, ոչ մի լավ բան չտա-
լով բազմաչարչար հայ ժողովրդին։

Հայ ժողովուրդն ապրելու, գոյատևելու, սոցիալիստական վերածնության
ուղիով ընթանալու հնարավորություն ստացավ շնորհիվ սովետական իշխա-
նության, լենինյան ազգային քաղաքականության և ռուս մեծ ժողովրդի եղ-
բայրական օգնության։

րեց քաղաքականությանը, որն առաջ համարվում էր միայն կառավարող բուրժուական վերնախավի գործը։ Տարբեր մակարդակների կուսակցական և հասարակական այլ կազմակերպությունների մասնակցությունն արտաքին քաղաքականության պրոբլեմների քննարկմանը, սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքական ծրագրերի պրոպագանդմանը, խաղաղասեր ուժերի լայն ներկայացուցչությունը միջազգային համաժողովներում՝ այս ամենը պետության կառավարմանը, նրա քաղաքական կուրսի մշակմանը սոցիալիստական հասարակության ժողովրդական զանգվածների անմիջական մասնակցության ձևերն են։

Բայց այս բնագավառում ևս սոցիալիզմի ազդեցությունը չի սահմանափակվում սոցիալիստական պետությունների շրջանակներով։ Սոցիալիստական երկրների օրինակի ներգործության տակ մյուս երկրներում ևս ակտիվանում են այն ուժերը, որոնք պայքարում են խաղաղության և միջազգային անվտանգության ամրապնդման համար։ Դրա վկայությունն են խաղաղության կողմնակիցների համաշխարհային շարժումը, եվրոպական անվտանգության, սպառազինությունների մրցավազքի դադարեցման համար ծավալված շարժումները և հակապատերազմական մյուս ելույթները, որոնցում ընդգրկվում են բնակչության լայն խավերը կապիտալիստական և զարգացող բոլոր երկրներում։ Որպես ընդհանուր դեմոկրատական և հակապատերազմական շարժումների մոբիլիզացնող ու կազմակերպող ուժ հանդես են գալիս կոմունիստական և բանվորական կուսակցությունները։

ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՌԱՋԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ պետության գոյության 60 տարվա ընթացքում արմատապես փոխվել են միջազգային հարաբերությունները։ Սոցիալիզմը դարձել է համաշխարհային զարգացման կարևորագույն գործոն, իսկ սոցիալիզմը ներկայացնող երկրները (Սովետական Միությունը և մյուս եղբայրական պետությունները)՝ խաղաղության և առաջադիմության պատվար բոլոր ժողովուրդների համար։ Սոցիալիզմը նոր արագություն է հաղորդում պատմական զարգացմանը, որի շնորհիվ ավելի ու ավելի են աճում աշխարհի հեղափոխական նորացման տեմպերը։ Այն ամուր կերպով ու ընդմիշտ հաստատվել է եվրոպական մայրցամաքում, այն հաստատվում է նաև մյուս մայրցամաքներում։ Տեղի է ունենում հին հասարակական-տնտեսական ֆորմացիան նոր, սոցիալիստական ֆորմացիայով փոխարինելու օրինաչափ պրոցես։ Սոցիալիզմը դարձել է արդի հասարակական շարժման տիրապետող ուժ։ Այժմ առանց Սովետական Միության և սոցիալիստական մյուս պետությունների չի կարելի լուծել միջազգային կյանքի քիչ թե շատ նշանակալի և ոչ մի հարց։ Վճռական հակահարված տալով խաղաղության և սոցիալիզմի հակառակորդների բոլոր մեքենայություններին, շեշտվում է Հոկտեմբերյան հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, «Սովետական Միությունը և մյուս եղբայրական սոցիալիստական երկրները ձգտում են է՛լ ավելի զարգացնել միջազգային իրադրության մեջ խաղաղության ու սոցիալական առաջադիմության օգտին կատարվող բարենպաստ վերափոխումները, լարվածության թուլացումը դարձնել շարունակական, ավելի ու ավելի կենսունակ, համապարփակ ու անշրջելի, բոլոր մայրցամաքներն ընդգրկող պրոցես՝ անցնելու պետությունների հաստատուն բեղմնավոր խաղաղ համագործակցության, գործնական հաջողությունների հասնելու զինաթափման և առաջին հերթին միջուկային զինաթափման բնագավառում»։

Այս ազնիվ նպատակներին հասնելու ռեալությունը երաշխավորվում է սոցիալիստական պետությունների գիտականորեն հիմնավորված արտաքին քաղաքական ծրագրով, համաշխարհային ասպարեզում նրանց արդյունավետ կոորդինացված գործողություններով՝ ի շահ միջազգային խաղաղության ամրապնդման, ի շահ համաշխարհային սոցիալիզմի վերընթաց շարժման։

«Международная жизнь», № 5, 1977.

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

**Ց. Ծ. ՄԱՀՏԵՍՅԱՆ**
Տնտեսագիտության դոկտոր

Մեր ԵՐԿՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ տնտեսության զարգացման ներկա փուլում հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման հարցերի բազմակողմանի ուսումնասիրությունը և վերլուծությունն ունեն կարևոր տեսական ու գործնական նշանակություն։

Հասարակական արտադրության արդյունավետությունը բնութագրվում է քանակական և որակական բազմաթիվ ցուցանիշներով։ Դրանց մեջ էական են աշխատանքի արտադրողականության բարձրացումը, ազգային եկամտի միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի կրճատումը, հիմնական արտադրաֆոնդերի հատույցի բարձրացումը, ազգային եկամտի կուտակման ֆոնդի արդյունավետ օգտագործումը և այլն։

Հայկական ՍՍՀ-ում տարեցտարի բարձրանում է հասարակական աշխատանքի արտադրողականության մակարդակը։ 1960—1975 թթ. այն աճել է շուրջ 155 տոկոսով կամ տարեկան միջին հաշվով՝ 6,4 տոկոսով։

Հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում մեծ են հանրապետության նյութական արտադրության գրեթե բոլոր ճյուղերի ձեռք բերած նվաճումները։ Բավական է նշել, որ 1960—1975 թթ. հանրապետության արդյունաբերության մեջ այն աճել է 107 տոկոսով, շինարարության մեջ՝ 77, գյուղատնտեսության մեջ՝ 66, տրանսպորտում և կապում՝ 106 և նյութական արտադրության մնացած բոլոր ճյուղերում միասին վերցրած՝ 53 տոկոսով։

Հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը նյութական արտադրության բոլոր ճյուղերում, միասին վերցրած, շատ ավելի բարձր են, քան այդ ճյուղերից յուրաքանչյուրում։ Դա բացատրվում է նյութական արտադրության ոլորտում զբաղվածների աշխատանքի արտադրողականության տարբեր մակարդակ ունեցող աշխատողների տեսակարար կշռի խիստ փոփոխությամբ։ Հայտնի է, որ մեկ աշխատողի աշխատանքի միջին տարեկան արտադրողականությունն արդյունաբերության մեջ անհամեմատ ավելի բարձր է, քան գյուղատնտեսության մեջ և նյութական արտադրության մյուս բոլոր ճյուղերում։ Եթե նկատի ունենանք, որ 1960—1975 թթ. հանրապետության նյութական արտադրության ոլորտում զբաղված աշխատողների թվի մեջ արդյունաբերության տեսակարար կշիռն աճել է 13,8, իսկ գյուղատնտեսությանը՝ կրճատվել է 22,7 տոկոսով, ապա հասկանալի կլինի, որ, ամբողջապես վերցրած, նյութական արտադրության ոլորտում հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերի գերազանցությունն առանձին ճյուղերի նույն ցուցանիշի համեմատությամբ հիմնականում



# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ՍՍՀՄ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԻԾԸ

## ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆՀԱՏԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

Հ ՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխության հաղթանակի շնորհիվ սկիզբ առած նոր հասարակարգի 60-ամյա պատմությունն անհերքելիորեն վկայում է, որ, ի տարբերություն բոլոր նախորդ հասարակական-տնտեսական ֆորմացիաների, սոցիալիզմը զարգանում է վերընթաց գծով, բացառում սոցիալական հակամարտությունն ու պատերազմները և, ավելի ու ավելի բարձր աստիճանի հասցնելով հասարակական կյանքի բոլոր կողմերը, իրական պայմաններ է ստեղծում մարդկային անհատի համակողմանի զարգացման, անհատի և հասարակության ներդաշնակ միասնություն ստեղծելու համար։

Դա առավել ևս ակնհայտ է այսօր, երբ մեր երկիրը վստահորեն թևակոխել է կոմունիստական հասարակարգի զարգացման նոր, ավելի հասուն փուլ, որն իրավացիորեն կոչվում է զարգացած սոցիալիզմ։ Այն բնութագրվում է սոցիալիստական զարգացման շնորհիվ ստեղծված սեփական հիմքով՝ հզորագույն արտադրաուժերով, փոխադարձ օգնության և համագործակցության հասուն արտադրահարաբերություններով, հասարակության սոցիալական միասնությամբ, համակողմանիորեն ծաղկող և անշեղորեն մերձեցող ազգերի ու ազգությունների համախմբումով միասնական սովետական ժողովրդի մեջ, ժողովրդի բարձր կազմակերպվածությամբ, գաղափարայնությամբ, գիտակցականությամբ և համախմբությամբ հասարակության առաջատար քաղաքական ուժի՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության շուրջ։ Դա ամենաբարձր հումանիզմի, իսկական դեմոկրատիայի հասարակարգ է, որի կյանքի օրենքը բոլորի հոգատարությունն է յուրաքանչյուրի բարօրության նկատմամբ և յուրաքանչյուրի հոգատարությունը բոլորի բարօրության նկատմամբ, այսինքն՝ հասարակության և անհատի այն ներդաշնակ միասնությունը, որի մասին դարերով երազել և որի համար հետևողականորեն պայքարել են մարդկության մեծագույն հանճարները։

Միանգամայն բնական է, որ սոցիալիստական հասարակության զարգացման այս նոր աստիճանը պահանջում է արդեն իսկ համաժողովրդական դարձած սոցիալիստական պետության նպատակների ու սկզբունքների, նրա կազմակերպման հիմունքների սահմանման և վավերագրման մի նոր մակարդակ։ Ոչ միայն մեր երկրի, այլև ամբողջ համաշխարհային քաղաքակրթության ապագայի համար վիթխարի նշանակություն ունեցող այդ խնդրի փայլուն իրականացումն է սահմանադրական հանձնաժողովի ներկայացրած և ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի կողմից հիմնականում հավանություն գտած Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրու-



ձեռք է բերվել աշխատանքի արտադրողականության տարբեր մակարդակ ունեցող ճյուղերի կառուցվածքային տեղաշարժերի հետևանքով։ Եթե չեզոքացնենք կառուցվածքային տեղաշարժերի ազդեցությունը, ապա կստացվի, որ հանրապետության նյութական արտադրության ամբողջ ոլորտում հասարակական աշխատանքի արտադրողականությունը 1960—1965 թթ. աճել է 15,7, 1965—1970 թթ.՝ 21,2, 1970—1975 թթ.՝ 25,7, իսկ 1960—1975 թթ.՝ 84,1 տոկոսով, այսինքն՝ այնքան, որքան նյութական արտադրության առանձին ճյուղերի աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը։

Հաշվարկները ցույց են տալիս, որ միայն կառուցվածքային տեղաշարժերի հետևանքով հանրապետությունում հասարակական աշխատանքի արտադրողականությունը 1960—1965 թթ. աճել է 17, 1965—1970 թթ.՝ 14, 1970—1975 թթ.՝ 8,2, իսկ 1960—1975 թթ.՝ 38,4 տոկոսով։ Եթե հանրապետության նյութական արտադրության ոլորտում զբաղված յուրաքանչյուր աշխատողի աշխատանքի միջին արտադրողականությունը մնար 1960 թվականի մակարդակին, ապա 1975-ի հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի արտադրության ծավալներն ապահովելու համար կպահանջվեր հանրապետության նյութական արտադրության ոլորտի աշխատողների թիվն ավելացնել 524 հազար մարդով։ Ավելին, եթե արտադրության ոլորտի աշխատողների մեջ առանձին ճյուղերի տեսակարար կշիռները չփոխվեին հօգուտ աշխատանքի արտադրողականության բարձրացման, այդ դեպքում 1975 թվականի հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի արտադրության ծավալներն ապահովելու համար կպահանջվեր նյութական արտադրության ոլորտի աշխատողների թիվն ավելացնել ևս 239 հազարով։ Ահա թե ինչպիսի խոշոր նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացումը և ճյուղային կառուցվածքի առաջադիմական տեղաշարժերը հասարակական արտադրության մասշտաբների մեծացման գործում։

Հայտնի է, որ հասարակական արտադրության արդյունքների ծավալը պայմանավորվում է նյութական արտադրության ոլորտում գործադրվող կենդանի աշխատանքի քանակով և նրա աշխատանքի արտադրողականության մակարդակով։ Այս երկու գործոններից վճռականը հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։

1961—1975 թթ. հանրապետության հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի $^4/_5$-ից ավելին ստացվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի աճման գործում աշխատանքի արտադրողականության տեսակարար կշիռն ավելի մեծ կլիներ, եթե օգտագործվեին այդ ասպարեզում ունեցած բոլոր հնարավորությունները։ Գաղտնիք չէ, որ ձեռնարկությունների մի զգալի մասը թերակատարում է աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանային առաջադրանքները։ Մեծ չափերի են հասնում բանվորական ժամանակի կորուստները և բանվորական ուժի հոսունությունը։ Թերակատարվում են տեխնիկական առաջընթացի պլանները, վատ են օգտագործվում մեքենաներն ու սարքավորումները, ցածր է դրանց օգտագործման հերթափոխության գործակիցը, և մեծ մասշտաբների են հասնում դրանց պարապուրդները։

ՍՄԿԿ XXV համագումարը, ամփոփելով իններորդ հնգամյակում մեր երկրի ձեռք բերած տնտեսական հաջողությունները և հաստատելով տասներորդ հնգամյակում տնտեսության զարգացման հիմնական ուղղությունները, առանձնահատուկ ուշադրություն նվիրեց հանրային արտադրության որակական ցուցանիշներին, մասնավորապես աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերին։ Համագումարում Լ. Ի. Բրեժնևն ուղղակի նշեց, որ երկրի առջև կանգնած տնտեսական և սոցիալական բազմազան խնդիրները հաջողությամբ լուծելու համար այլ ուղի չկա, բացի աշխատանքի արտադրողականության արագ աճից, ամբողջ հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացումից։ Հնգամյա պլանով նախատեսված է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ապահովել արդյունա-

բերական արտադրանքի աճի մոտ 90 տոկոսը, գյուղատնտեսության և շինարարության արտադրանքի ամբողջ աճը, երկրի ազգային եկամտի ավելացման 85—90 տոկոսը։

Հասարակական արտադրության արդյունավետության աստիճանը բնութագրող լավագույն ցուցանիշներից մեկն ազգային եկամտի միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի կրճատումն է։

Վերջին քսան տարիներին ՀՍՍՀ-ում զուտ արտադրանքի միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի չափը էապես կրճատվել է արդյունաբերության մեջ (18,8 տոկոսով) և տրանսպորտում (17,8 տոկոսով), իսկ գյուղատնտեսության մեջ, ընդհակառակն, խիստ աճել է։ Այդ աճը (21,7 տոկոս) արդյունք է օբյեկտիվ և սուբյեկտիվ մի շարք գործոնների։ Ամենից առաջ նշենք, որ վերջին տասը տարվա ընթացքում (1965—1975 թթ.) հանրապետության գյուղատնտեսության մեջ կատարվեցին հսկայական մասշտաբների հասնող կապիտալ ներդրումներ։ Միայն պետական և կոոպերատիվ կապիտալ ներդրումների ծավալն այդ տարիներին կազմեց 1.020 միլիոն ռուբլի, այսինքն 2,6 անգամ ավելի, քան ներդրվել էր սովետական իշխանության գոյության անցած ամբողջ ժամանակաշրջանում՝ 1921—1965 թթ.։ Հասկանալի է, որ կապիտալ ներդրումների նման աճը օբյեկտիվորեն պետք է հանգեցներ հանրապետության գյուղատնտեսության արտադրանքի ·կապիտալատարության, ֆոնդատարության և նյութատարության բարձրացմանը, հետևապես և՝ զուտ արտադրանքի միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի մակարդակի աճին։ Առաջիկա տարիներին, երբ այդ ներդրումները կտան իրենց տնտեսական արդյունքները, զուտ արտադրանքի միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի մակարդակը կիջնի նաև գյուղատնտեսության մեջ։ Սակայն այդ գործում քիչ դեր չխաղացին և գյուղատնտեսական արտադրության կազմակերպման բնագավառում տեղ գտած թերությունները, մասնավորապես գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման հնարավորությունների անբավարար օգտագործումը։

Հայտնի է, որ արտադրված ազգային եկամտի յուրաքանչյուր միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի մակարդակը միութենական տարբեր հանրապետություններում և տնտեսական շրջաններում խիստ տարբեր է։ Այսպես, եթե ՍՍՀՄ-ում ազգային եկամտի յուրաքանչյուր ռուբլու հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերը 1974 թ. կազմել է 1,3 ռուբլի, ապա ՌՍՖՍՀ-ում այն կազմել է 1,31, Հայկական ՍՍՀ-ում՝ 1,15, Թուրքմենական ՍՍՀ-ում՝ 0,96, Էստոնական ՍՍՀ-ում՝ 1,45 ռուբլի և այլն[1]։ Նշված ծախսերի մակարդակը միութենական առանձին հանրապետությունների միջև տատանվել է մինչև 51,1 տոկոսի սահմաններում։ Ազգային եկամտի միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի մակարդակի նման խիստ տարբերությունը դեռևս չի նշանակում, որ նյութական ռեսուրսներն ավելի արդյունավետ են օգտագործել այն հանրապետություններում ու տնտեսական շրջաններում, որտեղ դրանք ցածր են, և ընդհակառակը։ Բանն այն է, որ բնական և աշխարհագրական պայմանների տարբերության, ինչպես նաև արտադրության զարգացման առանձնահատկությունների հետևանքով ազգային եկամտի միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի մակարդակը, անշուշտ, միութենական տարբեր հանրապետություններում և տնտեսական շրջաններում պետք է որ խիստ տարբեր լինեն։ Ինչ խոսք, լեռնային դժվարամատչ և կլիմայական խիստ պայմաններ ունեցող տերիտորիաներում արդյունքի յուրաքանչյուր միավորի արտադրության համար պահանջվում են համեմատաբար ավելի շատ ծախսումներ, քան այն վայրերում, որտեղ արտադրության համար կան ավելի բարենպաստ պայմաններ։ Հայտնի է, որ հասարակական արտադրության ճյուղերն իրենց կապիտալատարությամբ, ֆոնդատարությամբ և նյութատարությամբ խիստ տարբեր են, հետե-

[1] Հաշվարկները կատարված են ՍՍՀՄ կենտրոնական վիճակագրական վարչության համապատասխան տվյալների հիման վրա։



վապես միութենական այն հանրապետություններում և տնտեսական շրջաններում, որտեղ առավել զարգացել են կապիտալատար, ֆոնդատար և նյութատար ճյուղերը, ազգային եկամտի միավորի արտադրության վրա կատարված նյութա-արտադրական ծախսերի մակարդակը պետք է ավելի բարձր լինի, քան մյուսներում։ Այստեղից հետևում է, որ նյութական ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործման և հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման ասպարեզում միութենական առանձին հանրապետությունների և տնտեսական շրջանների ձեռք բերած նվաճումները համեմատության մեջ դնելու և գնահատելու համար չպետք է հիմք ընդունել դրանց կողմից ազգային եկամտի միավորի արտադրության վրա կատարված նյութա-արտադրական ծախսերի բացարձակ մակարդակի ցուցանիշները, այլ պետք է հաշվի առնել օբյեկտիվ և սուբյեկտիվ այն բոլոր գործոնները, որոնք պայմանավորում են ազգային եկամտի միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի դինամիկան դրանցից յուրաքանչյուրում տնտեսական զարգացման այս կամ այն ժամանակաշրջանում։

Արդեն նշել ենք, որ ազգային եկամտի միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի մակարդակը և դինամիկան շատ բանով պայմանավորվում են արտադրության ճյուղային կառուցվածքի տեղաշարժերով։ Եթե հասարակական արտադրության մեջ ավելի արագ զարգանան նյութատար և ֆոնդատար ճյուղերը, ապա մյուս բոլոր պայմանների հավասարության դեպքում ազգային եկամտի միավորին ընկնող ծախսերի մակարդակը կունենա աճի տենդենց։ Իսկ եթե ավելի արագ զարգանան այն ճյուղերը, որոնցում զուտ արտադրանքի բաժինն ավելի մեծ է, ապա այդ ծախսերի մակարդակը կունենա ցածրացման տենդենց։

1960—1975 թթ. ընթացքում զգալի տեղաշարժեր են կատարվել Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության ճյուղային կառուցվածքում. մեծացել է արդյունաբերության և շինարարության տեսակարար կշիռը, իսկ գյուղատնտեսության ու մի շարք այլ ճյուղերինը՝ իջել։ Հաշվարկները ցույց են տալիս, որ միայն այդ պատճառով հանրապետության ազգային եկամտի աճի տեմպերն այդ ժամանակահատվածում ետ են մնացել նրա հասարակական ամբողջական արդյունքի աճի տեմպերից 4,5 տոկոսով։ Սա նշանակում է, որ հանրապետության ժողովրդական տնտեսության ճյուղային կառուցվածքի փոփոխությունները նշված ժամանակաշրջանում նպաստել են ազգային եկամտի միավորին ընկնող նյութա-արտադրական ծախսերի մակարդակի աճմանը։

Ազգային եկամտի միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի մակարդակը և դինամիկան պայմանավորող կարևորագույն գործոններից է նաև նյութական արտադրության ճյուղերի արտադրանքի նյութատարության փոփոխությունը։ Բնականաբար, որքան կրճատվի նյութա-արտադրական ծախսերի տեսակարար կշիռը յուրաքանչյուր ճյուղի համախառն արտադրանքի մեջ, այնքան կփոքրանա փոխհատուցման ֆոնդի տեսակարար կշիռը հասարակական ամբողջական արդյունքի մեջ, հետևապես կիջնի ազգային եկամտի միավորի հաշվով կատարված ծախսերի մակարդակը։ Փաստացի վիճակագրական տվյալների հիման վրա կատարված հաշվարկները ցույց են տալիս, որ միայն այդ գործոնի ազդեցության հետևանքով հանրապետության ազգային եկամտի աճի տեմպերը 1960—1975 թվականներին առաջ են անցել դրա հասարակական ամբողջական արդյունքի աճի տեմպերից 24,7 տոկոսով։ Իսկ դա նշանակում է, որ նշված ժամանակաշրջանում այդ գործոնը հանգեցրել է ազգային եկամտի միավորին ընկնող նյութա-արտադրական ծախսերի մակարդակի իջեցմանը։

Հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի աճի տեմպերի հարաբերակցությունը, հետևապես ազգային եկամտի միավորին ընկնող նյութա-արտադրական ծախսերի դինամիկան պայմանավորող կարևորագույն գործոններից են նաև հասարակական արտադրության երկու ստորաբաժանումների աճի տեմպերի հարաբերակցությունը և արտադրական կուտակման նորմայի փոփոխությունը։

Հայտնի է, որ հասարակական ամբողջական արդյունքի փոխհատուցման ֆոնդի և ազգային եկամտի արտադրական կուտակման ֆոնդի միակ աղբյուրը առաջին ստորաբաժանման արտադրանքն է։ Վերջինս իր գերակշռող մասով կոչված է փոխհատուցելու հասարակական արտադրության 1-ին և 2-րդ ստորաբաժանումներում սպառված արտադրության միջոցների արժեքը, իսկ մնացած մասով ավելացնելու երկրի ազգային հարստությունը։ Այսպիսով, առաջին ստորաբաժանման արտադրանքն ըստ էության իրենից ներկայացնում է հասարակական ամբողջական արդյունքի փոխհատուցման ֆոնդի և ազգային եկամտի արտադրական կուտակման ֆոնդի ամբողջությունը։ Սրանից հետևում է, որ հասարակական ամբողջական արդյունքի, դրա փոխհատուցման ֆոնդի և ազգային եկամտի աճի տեմպերի հարաբերակցությունը, հետևապես նաև ազգային եկամտի միավորին ընկնող նյութա-արտադրական ծախսերի դինամիկան խիստ շատ բանով պայմանավորվում են նաև հասարակական արտադրության առաջին ստորաբաժանման արտադրանքի նշված բաղադրիչ մասերի աճի տեմպերի հարաբերակցությամբ։ Մյուս բոլոր պայմանների հավասարության դեպքում որքան բարձր լինի արտադրական կուտակումների տեսակարար կշիռը հասարակական արտադրության առաջին ստորաբաժանման արտադրանքի մեջ, այնքան ավելի բարձր կլինեն ազգային եկամտի աճի տեմպերը հասարակական ամբողջական արդյունքի և նրա փոխհատուցման ֆոնդի աճի տեմպերից և հակառակը։ Մինչև 1970 թվականը հանրապետության հասարակական արտադրության առաջին ստորաբաժանման արտադրանքի մեջ արտադրական կուտակումների բաժինն ունեցել է բարձրանալու, իսկ արտադրության պրոցեսում սպառված արտադրության միջոցներինը՝ իջնելու տենդենց։ Դա նշանակում է, որ այդ ժամանակաշրջանում առաջին ստորաբաժանման արտադրանքի կառուցվածքային տեղաշարժերը գործել են ազգային եկամտի առավել արագ աճի ուղղությամբ։ Հասկանալի է, որ նման դրությունը պետք է նպաստեր ազգային եկամտի միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի կրճատմանը։

Իններորդ հնգամյակի տարիներին հանրապետության հասարակական արտադրության առաջին ստորաբաժանման արտադրանքի կառուցվածքում նկատելիորեն կրճատվեց արտադրական կուտակումների բաժինը՝ 1975 թվականին այն կազմեց 16,6 տոկոս, 1970 թվականի 18,3 տոկոսի դիմաց։ Այդ տեղաշարժերը նպաստել են ազգային եկամտի միավորի հաշվով կատարված նյութա-արտադրական ծախսերի աճին։

Հասարակական արտադրության արդյունավետության աստիճանը բնութագրող լավագույն ցուցանիշներից մեկն էլ հիմնական արտադրաֆոնդերի միավորի հաշվով արտադրած զուտ արտադրանքի (ֆոնդահատույցի) ցուցանիշն է։

Հաշվարկները ցույց են տալիս, որ 1965—1975 թթ. ֆոնդահատույցի ցուցանիշը հանրապետության հասարակական արտադրության մեջ կրճատվել է 5,3 տոկոսով։ Ընդ որում, շինարարության մեջ այն կրճատվել է 49,8, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 40,9 տոկոսով, որը պայմանավորվել է օբյեկտիվ և սուբյեկտիվ մի շարք գործոններով։ Բանն այն է, որ այդ տարիներին շահագործման հանձնվեցին հսկայական քանակությամբ նոր հիմնական ֆոնդեր, որոնց տնտեսական արդյունավետությունն սկզբնական ժամանակաշրջանում, հասկանալի պատճառներով, դեռևս ցածր էր։ Բավական է նշել, որ 1960—1974 թվականներին հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում հիմնական արտադրաֆոնդերի ֆիզիկական ծավալն աճել է 3,3 անգամ։ Ընդ որում, գյուղատնտեսության մեջ այն աճել է 3,9, իսկ շինարարության մեջ՝ 8,8 անգամ։ Սա նշանակում է, որ միայն այդ տարիներին ստեղծվել և գործարկվել են մի քանի անգամ ավելի շատ արտադրաֆոնդեր, քան հանրապետության տնտեսական զարգացման ամբողջ նախորդ ժամանակաշրջանում։

Մեր ժողովրդական տնտեսությունն ունի վիթխարի քանակությամբ արտադրաֆոնդեր, որոնք կազմում են երկրի ազգային հարստության կարևորագույն մասը։ Դրանց արդյունավետ օգտագործումը, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIV



և XXV համագումարներում, մեծ նշանակություն ունի արտադրության զարգացման տեմպերի արագացման, ազգային եկամտի ավելացման և բնակչության կենսամակարդակի բարձրացման գործում։

Հասարակական արտադրության արդյունավետությունն իր արտացոլումը գտնում է նաև ազգային եկամտի կուտակման ֆոնդի օգտագործման և հատկապես՝ կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետության բարձրացման ցուցանիշներում։ Իններորդ հնգամյակում հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ կատարված արտադրական կապիտալ ներդրումների ծավալը, յոթերորդ հնգամյակի համեմատությամբ, աճեց 135,4, իսկ ութերորդ հնգամյակի համեմատությամբ՝ 39,2 տոկոսով։ Մինչդեռ այդ նույն ժամանակաշրջանների համեմատությամբ ազգային եկամտի արտադրության ծավալը համապատասխանաբար աճեց 131,5 և 46,7 տոկոսով։ Սա նշանակում է, որ արտադրական կապիտալ ներդրումների միավորի հաշվով ազգային եկամտի արտադրությունն իններորդ հնգամյակում, յոթերորդ հնգամյակի համեմատությամբ, կրճատվել է՝ 2,9 տոկոսով, իսկ ութերորդ հնգամյակի համեմատությամբ՝ ընդհակառակը, աճել է 11,9 տոկոսով։ Այստեղից հետևում է, որ իններորդ հնգամյակում արտադրական կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետությունը, յոթերորդ հնգամյակի համեմատությամբ, իջել է, իսկ ութերորդ հնգամյակի համեմատությամբ՝ բարձրացել։

Միաժամանակ պետք է նշել, որ զուտ կապիտալ ներդրումների նորման, որն իրենից ներկայացնում է հիմնական արտադրական ֆոնդերի հավելաճի հարաբերական մեծությունն արտադրական նշանակություն ունեցող ամբողջ կապիտալ ներդրումների մեջ, դեռևս ցածր է։ Բավական է նշել, որ իններորդ հնգամյակի տարիներին այն կազմեց 51,2 տոկոս։ Մինչդեռ հասկանալի է, որ հավասար պայմաններում որքան մեծ լինի զուտ կապիտալ ներդրումների նորման, այնքան ավելի բարձր կլինեն հասարակական արտադրության զարգացման տեմպերը, և ընդհակառակը։ Ընթացիկ հնգամյակում կապիտալ ներդրումների խնայողաբար և նպատակասլաց օգտագործման ու շինարարության ժամկետների կրճատման շնորհիվ զուտ կապիտալ ներդրումների նորման կունենա աճի տենդենց։

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումում Լ. Ի. Բրեժնևը, անդրադառնալով արտադրության արդյունավետության բարձրացման հարցին, նշեց. «Շեշտը դնելով արդյունավետության և որակի վրա, մենք նպատակ ենք դնում տասներորդ հնգամյակի տարիներին ընդլայնել տնտեսական աճի աղբյուրները, բարելավել էկոնոմիկայի հաշվեկշռվածությունը և դրանով իսկ լավ հող նախապատրաստել նաև 80-ական թվականներին նշանակալի առաջընթացի համար»։

Տասներորդ հնգամյակում նախատեսված է հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման հիման վրա ժողովրդական տնտեսության զարգացման պլանավորված ցուցանիշները ձեռք բերել կապիտալ ներդրումների աճի ավելի պակաս տեմպերով։ Իսկ դա նշանակում է, որ շեշտը պետք է դրվի գործող ձեռնարկությունների արտադրական կարողությունների ավելի լրիվ և ռացիոնալ օգտագործման վրա։ Ժողովրդական տնտեսության զարգացման ներկա փուլի օբյեկտիվ պայմանները հրամայաբար պահանջում են առավել մեծ ուշադրություն բևեռել հասարակական արտադրության աճի այնպիսի հանգուցային պրոբլեմների վրա, ինչպիսիք են գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումը, գիտության նվաճումների առավել լրիվ և արդյունավետ օգտագործումը, հասարակական արտադրության ճյուղային և տերիտորիալ կառուցվածքի որակական փոփոխությունները, նյութական և աշխատանքային ռեսուրսների նպատակասլաց և խնայողաբար օգտագործումը, ժողովրդական տնտեսության կառավարման և պլանավորման մեթոդների, ինչպես նաև տնտեսական խթանների ու լծակների կատարելագործումը։

# ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԽՆԱՅՈՂՈՒԹՅՈՒՆԸ

**Լ. Ջ. ԱՆԱՆՅԱՆ**
**Տնտեսագիտության թեկնածու**

*ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում անչափ կարևորեց խնայողության ռեժիմի հետևողական կիրառման անհրաժեշտությունը։ «Ինչքան էլ որ մեծանա մեր հասարակության հարստությունը,— ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասաց Լ. Ի. Բրեժնևը,— խստագույն տնտեսումն ու խնայողությունը մնում են ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանը»* (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *Երևան, 1976 թ., էջ 67)։*

*Արհմիությունների XVI համագումարում անդրադառնալով այդ պրոբլեմին՝ Լ. Ի. Բրեժնևը խնայողության ռեժիմի անշեղ կիրառումը մեծապես պայմանավորեց աշխատանքային, պլանային և տեխնոլոգիական կարգապահության ամրապնդմամբ։ «Մի արտադրամասի աշխատանքի խափանումը,— ասաց նա,— կարող է բազում հազարների կորուստներ բերել գործարանին, իսկ, վերջին հաշվով, նաև անդրադառնալ ամբողջ ճյուղի վրա»։ Ընկ. Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ այժմ առավել մեծ նշանակություն է ստացել աշխատաժամանակի խնայողությունը, որովհետև երկրի մասշտաբով «Մեկ րոպեում արտադրվում է ավելի քան երկու միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, ձուլվում է գրեթե 300 տոննա պողպատ, արդյունահանվում է ավելի քան հազար տոննա նավթ, գրեթե մեկուկես հազար տոննա ածուխ, 650 հազար խորանարդ մետր գազ։ Աշխատաժամանակի միայն մեկ րոպեի կորուստը համասարազոր է 200 հազար բանվորի ցերեկային աշխատանքի արդյունքի կորստյան»։*

*Խնայողությունը սոցիալիստական տնտեսավարման բնորոշ հատկանիշն է։ Դրան մշտական ուշադրություն են նվիրում մեր կուսակցությունն ու կառավարությունը։ Խնայողության ռեժիմի էությունն աշխատանքային, նյութական ու ֆինանսական ռեսուրսների խնայողաբար օգտագործումն է՝ հօգուտ հասարակության շահերի։ Ժամանակին Կ. Մարքսը նշել է, որ ամեն տեսակի խնայողություն, վերջին հաշվով, հանգեցնում է աշխատաժամանակի խնայողության։ «Ինչպես առանձին անհատի, այնպես էլ հասարակության համար, նրա զարգացման, նրա սպառման և նրա գործունեության բազմակողմանիությունը պայմանավորված է ժամանակի խնայողությամբ»* (Архив Маркса и Энгельса, т. IV, стр.119).

*Սոցիալիստական հասարակարգում չափազանց լայն է ժամանակի տնտեսման օրենքի գործողության ոլորտը։ Առանձնապես զարգացած սոցիալիզմի պայմաններում մեծանում է աշխատաժամանակի տնտեսման նշանակությունը։*

*Ամեն ինչում խնայողություն անելու խնդիրը փաստորեն ժամանակի հրամայական պահանջն է։ Կապիտալ ներդրումների յուրաքանչյուր ռուբլու, աշխատանքի յուրաքանչյուր ժամվա, արտադրանքի յուրաքանչյուր կիլոգրամի արդյունավետ ու խնայողաբար օգտագործումը տնտեսական հաջողությունների ապահովման գրավականն է։ Նյութական ու աշխատանքային ռեսուրսների նույնիսկ ամենափոքր խնայողությունը երկրի մասշտաբով կազմում է վիթխարի գումար։ Այսպես, 1960 թ. նյութական ծախսերի մեկ տոկոս խնայողությունը համասարազոր էր ազգային եկամտի 1,6 մլրդ ռուբլու լրացուցիչ աճին, 1965 թ.՝ 2,3 մլրդ, 1970 թ.՝ 3,5 մլրդ, իսկ 1975 թ.՝ մոտավորապես 5 մլրդ ռուբլու։ Միայն 1975 թ. ՍՍՀՄ արդյունաբերության մեջ խնայվել է 1,5 մլն տոննա սև մետաղների գլանվածք, ճիշտ այնքան, որքան ծախսվում է մեկ միլիոն «Վոլգա» ավտոմեքենայի արտադրության վրա։ Նույն տարում խնայվել է 11 մլրդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 12 մլն տոննա պայմանական վառելիք (տե՛ս* «Коммунист» *ամսագիր, № 11, 1976, էջ 7)։ Հաշվված է նաև, որ եթե ամբողջ երկրի արդյունաբերությունը շաբաթվա ընթացքում մեկ ժամ աշխատի խնայված նյութերով, ապա տասներորդ հնգամյակում հնարավոր կլինի լրացուցիչ թողարկել 60—70 մլրդ ռուբլու արտադրանք։*

*Ընթացիկ հնգամյակում նախատեսվում է պլանավորված ցուցանիշներն ապահովել կապիտալ ներդրումների աճի ավելի նվազ տեմպերով, քան նախորդ հինգ տարում։ Իններորդ հնգամյակի 42 տոկոսի դիմաց կապիտալ ներդրումները 1976—1980 թթ. կավելանան 26 տոկոսով։ Այդ պայմաններում շեշտը դրվում է գործող սարքավորումների, արտադրական հզորությունների առավել լրիվ օգտագործման վրա։ Իսկ արտադրական հզորությունների անբավարար օգտագործման պատճառով երկիրը կորցնում է միլիարդավոր ռուբլիներ։ Մի քանի տարի առաջ ՍՍՀՄ Կենտվիճվարչությունն անցկացրեց միաժամանակյա հետազոտություն, որի ընթացքում պարզվեց հետևյալը. այդ օրը երկրում չէր գործել մոտավորապես 300 հազար միավոր սարքավորում, այդ թվում 220 հազար մետաղահատ հաստոց։ Դա նշանակում էր անգործության մատնել միջին մեծության 400 ձեռնարկություն (տե՛ս* «Социалистический труд» *ամսագիր, № 5, 1976, էջ 74)։*

*Խնայողության ռեժիմի կիրառման հիմնական ուղիներն են՝ հումքի, նյութերի, վառելիքի, էլեկտրաէներգիայի, ապրանքանյութական արժեքների պաշարների ծախսման նորմավորման և հաշվառման սիստեմի կատարելագործումը, նյութական ռեսուրսների օգտագործման նկատմամբ վերահսկողության ուժեղացումը, անտնտեսավարության դրսևորումների դեմ պայքարի ծավալումը, սոցիալիստական մրցության հետևողական կազմակերպումը։*

*ՍՄԿԿ XXV համագումարին ներկայացված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ անհանդուրժելի համարվեցին այնպիսի թերությունները, ինչպիսիք են՝ աշխատաժամանակի կորուստները, պարապուրդները, աշխատանքի անհամաչափությունը, աշխատանքային և տեխնոլոգիական թույլ կարգապահությունը, առանձին ձեռնարկություններում կադրերի հոսունության բարձր տոկոսը։ Համագումարում նշվեց, որ խնայողության ռեժիմի ուժեղացումը, անտնտեսավարության, շռայլումների դեմ պայքարը կարճատև կամպանիա չեն, այլ կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ամենօրյա գործունեության կարևորագույն բաղկացուցիչ մասը։ «Ճիշտ հաշվել և արդյունավետ օգտագործել յուրաքանչյուր ռուբլին,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— աշխատանքի յուրաքանչյուր ժամը, արտադրանքի յուրաքանչյուր տոննան, մինչև վերջ արմատախիլ անել անտնտեսավարությունն ու թափթփվածությունը՝ սա մեր վսեմ կուսակցության պարտքն է, որովհետև մենք խնայողություն ենք անում հանուն մեզ համար ամենաթանկ բանի՝ հանուն հայրենիքի հարստության և հզորության, մեր ժողովրդի բարեկեցության և բարգավաճման»* (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 67)։*

*Երկրում լայն մրցություն է ծավալվել արդյունավետության ու որակի հնգամյակը ժամկետից շուտ և տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով կատարելու համար։ Բազմազան են դարձել մրցության ձևերը, ընդ որում, առաջնությունը տրվում է որակի համար մղվող պայքարին։ Իսկ աշխատանքի ու արտադրանքի բարձր որակն ինքնին խնայողություն է։ Մշակելով սոցիալիստական պարտավորությունները՝ արտադրական կոլեկտիվները հաշվի են առ-*

նում նաև որակական ցուցանիշները, ընդունում հումքի, նյութերի, վառելիքաէներգետիկ ռեսուրսների տնտեսմանը վերաբերող կետեր: Խնայողության հարցերն արտացոլվում են նաև սոցմրցության անհատական պայմանագրերում, քննարկվում կուսկազմակերպությունների ժողովներում, նրանց կոմիտեների ու բյուրոների նիստերում:

Այսպիսով, մրցության կազմակերպումը, դրանում խնայողության ռեժիմի արտացոլումը մշտապես գտնվում են կուսակցական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Մրցությունը նրանց քաղաքական աշխատանքի կարևոր բաղադրատարրերից է: Խնայողության համար ծավալված մրցության ընթացքում մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում ծնվել են «Խնայողություն մեծ ու փոքր գործերում», «Հանդիպական պլանը՝ խնայված նյութերից», «Երկու տոկոս պլանից դուրս՝ աշխատանքի և արտադրանքի որակի բարձրացման հաշվին» և այլ նախաձեռնություններ, որոնք արժանացել են կուսկազմակերպությունների լայն պաշտպանությանը: Այսպես, տասներորդ հնգամյակի առաջին օրերից կանգնելով նախահամագումարյան հերթափոխի, Լենինականի տեքստիլ կոմբինատի մանվածքային ֆաբրիկայի մի խումբ բանվորներ հանդես եկան «Արտապլանային արտադրանքը՝ միայն բարձր որակի, տնտեսված հումքի հաշվին» նախաձեռնությամբ: Կուսկոմիտեն քննարկեց այդ նախաձեռնության արմատավորման հարցը և հանձնարարեց արտադրամասային կուսակցական ու արհմիութենական կազմակերպություններին՝ այն տարածել միավորման մյուս ֆաբրիկաներում ու արտադրամասերում: Խնդիր դրվեց ոչ միայն խնայել օգտագործվող հումքը, նյութերը, էլեկտրաէներգիան, այլև բարձրացնել արտադրական հզորությունների օգտագործման գործակիցը: Կոլեկտիվը 1976 թ. հումքի տնտեսման հաշվին թողարկեց 222 հազար քմ գործվածք: Ընթացիկ տարում պարտավորվել է տնտեսել 215 տոննա բամբակ:

Սոցիալիստական մրցության կազմակերպման գործում խնայողության ռեժիմի ուժեղացման հարցերին լուրջ ուշադրություն է նվիրում նաև Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի կուսկազմակերպությունը: Սոցմրցությունը ծավալելիս և պարտավորությունները մշակելիս՝ այստեղ շեշտը դնում են արդյունավետության ու որակի բարձրացման, խնայողության ռեժիմի ուժեղացման վրա: Եթե մի քանի տարի առաջ կոմբինատում տարեկան 7—8 տոննա բնական մետաքսաթելի գերածախս էր լինում, ապա ներկայումս այն իսպառ կանխվել է: Առանձնապես զգալի է արհեստական մետաքսաթելի խնայողությունը: Միայն 1976 թ. ձեռնարկությունում տնտեսվել է 9,2 տոննա արժեքավոր հումք: Անցած տարի կոմբինատի գործվածքային № 2 արտադրամասի կոլեկտիվը պարտավորվել էր տնտեսել 2 տոննա հումք, 25 հազար ռուբլու օժանդակ նյութեր: Նման պարտավորություն էր ստանձնել նաև № 3 արտադրամասի կոլեկտիվը: Նրանք պատվով կատարեցին իրենց խոստումը և ընթացիկ տարում պարտավորվեցին տնտեսել ավելի շատ հումք ու օժանդակ նյութեր: 1977 թ. կոմբինատի կոլեկտիվը խնդիր է դրել տնտեսել 6 տոննա հումք, 500 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիա:

Խնայողության ռեժիմի կիրառման ասպարեզում հարուստ փորձ է կուտակել Երևանի ալյումինի գործարանի կոլեկտիվը: Կուսկազմակերպությունը և դիրեկցիան առանձնահատուկ ուշադրություն են նվիրում հումքի, նյութերի, էլեկտրաէներգիայի տնտեսման հարցերին: Դրանց կարևոր տեղ է հատկացվում սոցիալիստական մրցության համակարգում: Կուսկոմիտեն և արտադրամասային կուսկազմակերպությունները պարբերաբար անդրադառնում են խնայողության ռեժիմի պրոբլեմին, մրցողների ջանքերն ուղղում դրա անշեղ կիրառմանը: Դեռևս 1976 թ. մայիսին գործարանի կուսկոմիտեի ընդլայնված նիստում հաստատվել են արտադրատեխնիկական և կուսակցական-կազմակերպական աշխատանքի 1976—1980 թթ. պլան-միջոցառումները: Դրանցում նախանշվել են նաև հումքի, նյութերի և էներգառեսուրսների խնայողաբար օգտագործման ուղիներն ու միջոցները:

Սակայն ամեն մի միջոցառում ծառայում է իր նպատակին, տալիս սպաս-



ված արդյունքը միայն այն դեպքում, երբ բխում է այս կամ այն կոլեկտիվի շահերից, արժանանում համընդհանուր պաշտպանության, երբ դրանց իրականացումը դառնում է կուսկազմակերպության, կոմունիստների, արտադրության մարդկանց գլխավոր հոգսը: Այդ իրողության կոնկրետ վկայությունը մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում հումքի, նյութերի, վառելիքա-էներգետիկ ռեսուրսների խնայողության համար սոցմրցություն ծավալելու վերաբերյալ գործարանի կուսկոմիտեի (քարտուղար՝ Գ. Թորոսյան) նախաձեռնությունն է, որն արժանացավ ՀԿԿ Երևանի քաղկոմի հավանությանը: Ներկայումս գործարանում անցկացվում է արտադրության նոր ռեզերվների հայտաբերման, խնայողության ռեժիմի ուժեղացման և աշխատանքային կարգապահության ամրապնդման համագործարանային ստուգատես՝ երկու փուլով: Առաջին փուլն արդեն ավարտվել է (այն ընդգրկում էր 1976 թ. նոյեմբերի 15-ից մինչև 1977 թ. փետրվարի 15-ը), իսկ երկրորդ փուլը կտևի մինչև 1977 թ. դեկտեմբերի 31-ը: Այդ միջոցառման արդյունավետությունն ապահովելու նպատակով ստեղծվեցին գործարանային հանձնաժողով՝ գլխավոր ինժեներ Լ. Աղասիևի գլխավորությամբ, ինչպես նաև՝ արտադրամասային հանձնաժողովներ: Կազմվեցին աշխատանքի խնայողությունն ապահովելու համար կազմակերպական-տեխնիկական միջոցառումների պլաններ: Հանձնաժողովների առջև խնդիր դրվեց կազմակերպել ստուգատես և հանրագումարի բերել դրա արդյունքները:

Կուսկոմիտեն, արհկոմը և գործարանային հանձնաժողովն իրենց նիստերում պարբերաբար քննարկում են ստուգատեսի ընթացքը, կոնկրետ միջոցներ ձեռնարկում այն պատշաճ մակարդակով անցկացնելու համար: Ժողովրդական վերահսկիչների խմբերի հետ համատեղ պահեստներում և արտադրամասերում կատարվում են ստուգայցեր, ուսումնասիրվում է հումքի և նյութերի պահպանման ու օգտագործման, էլեկտրաէներգիայի սպառման վիճակը:

Հատկանշական է, որ գործարանի կոլեկտիվը սոցմրցությամբ պարտավորվել էր 1976 թ. խնայել 3,5 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, մինչդեռ փաստացի խնայողությունը կազմեց 11,5 մլն կվտ-ժամ: Ընդ որում, հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների մեջ էլեկտրաէներգիայի ամենաշատ խնայողություն ապահովվեց այստեղ: Այդ հաջողությունն, անտարակույս, տեխնիկական-կազմակերպական աշխատանքի արգասիք է:

Ստուգատեսն այդ գործունեության բաղկացուցիչ մասն է: Դրա ընթացքում ալյումինագործներն իրենց լավ դրսևորեցին, առաջավորների նախաձեռնությամբ առաջին փուլում ներդրվեց ռացիոնալիզատորական 30 առաջարկություն՝ 121 հազար ռուբլու տարեկան պայմանական արդյունավետությամբ: Փաստացի խնայողությունը կազմել է 58 հազար ռուբլի: Ստուգատեսի օրերին կոլեկտիվը տնտեսեց 2 մլն 855 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 100 տոննա պայմանական վառելիք: Խնայված մետաղի հաշվին պլանից դուրս թողարկվեցին մեծ քանակությամբ ժողովրդական սպառման ապրանքներ:

Խնայողության համար մրցությունն առանձնապես լայնորեն ծավալվեց գործարանի հիմնական՝ էլեկտրոլիզի, ֆոլգագլանման և կոնդենսատորային ֆոլգայի արտադրամասերում: Էլեկտրոլիզի արտադրամասը, որի պետն է կուսկոմիտեի անդամ Է. Հակոբյանը, ստուգատեսի առաջին փուլում տնտեսեց մեկ միլիոն 390 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիա (ծախսի մեկ տոկոսը), զգալի հումք ու նյութեր, այդ թվում 23 տոննա կավահող, 85 տոննա անոդային զանգված: Ֆոլգագլանման արտադրամասի (պետ՝ կոմունիստ Ռ. Իսրայելյան) կոլեկտիվն իր հաշվին գրանցեց մեկ միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիայի (ծախսի մեկ տոկոսը), 15 հազար ռուբլու հումքի ու նյութերի (ավիաբենզին, տեխնոլոգիական յուղ, թաղիք և այլն) խնայողություն: Առավել մեծ հաջողության հասավ կոնդենսատորային ֆոլգայի արտադրամասի (պետ՝ կոմունիստ Վ. Նաջարյան) կոլեկտիվը: Վերջինս երեք ամսում տնտեսեց էլեկտրաէներգիայի ծախսի 4,5 տոկոսը, 56 հազար ռուբլու հումք ու նյութեր, այդ թվում 31 տոննա բարձր մաքրության ալյումին, նատրիումի սուլֆատ, բորաթթու:

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, խնայողության ռեժիմի կիրառման հա-

մար մրցողների մղած պայքարը, նրանց եռանդն ու ջանքերը հիանալի արդյունք են տվել: Այժմ պարզենք, թե ինչպիսի միջոցներով են ապահովվել նրանք այդ ամենը: Ֆոլգագլանման արտադրամասում, օրինակ, խնայողության հիմնական ուղին եղել է արտադրանքի պիտանի ելքի տոկոսի մեծացումը: Մյուս կողմից, այդ գործում վճռական դեր են խաղացել կորուստների կրճատումը, սարքավորումների ռացիոնալ օգտագործումը, նոր տեխնոլոգիայի արմատավորումը, մարդկանց բարեխիղճ ու սրտացավ վերաբերմունքը: Բոլոր արտադրամասերում խստորեն պահպանվել է տեխնոլոգիական ռեժիմը, բացառվել են դրա խախտման դեպքերը, արդիականացվել են սարքավորումները և, որ ամենակարևորն է, արմատապես բարելավվել է հումքի, նյութերի հաշվառման, պահպանման և օգտագործման դրվածքը:

Ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրման շնորհիվ ձեռնարկությունում մեքենայացվել են մի շարք աշխատատար պրոցեսներ: Այդ հանգամանքը ևս նպաստել է խնայողության ռեժիմի ուժեղացմանը: Այսպես, օրինակ, կոնդենսատորային ֆոլգայի և ֆոլգագլանման արտադրամասերում անոդային զանգվածի բեռնում-բեռնաթափումը մի ժամանակ կատարվում էր ձեռքով: Ընդ որում, դժվարին աշխատանքի հետ միասին, բացասական երևույթ էր և այն, որ անոդների որոշ մասը փշրվում էր, դառնում օգտագործման համար ոչ պիտանի. կորուստները հասնում էին մեծ չափերի: Մինչդեռ, երբ մեքենայացվեցին բեռնումն ու բեռնաթափումը, կորուստները լրիվ վերացան:

Էլեկտրաէներգիայի խնայողության հարցը շատ էր հետաքրքրում գլխավոր էներգետիկի բաժնին (պետ՝ Ա. Գյուլնազարյան): Բանն այն է, որ ալյումինի ձուլվածքի արտադրության համար օգտագործվում են հոսանքատար ագրեգատներ, որոնք գործում են 850 վոլտ լարվածությամբ և 71—75 հազար ամպեր էլեկտրական հոսանքով: Սակայն արտադրությանը հատկացվող էլեկտրաէներգիայի որոշ մասը կորչում էր: Այդ կորուստները նվազեցնելու համար 1976 թ. մշակվեցին մի շարք միջոցառումներ: Խնդիր դրվեց մեծացնել հոսանքատար ծանր շինաների կտրվածքը: Գործող շինաներում հոսանքի խտությունը մեկ քառակուսի միլիմետրի վրա կազմում էր 0,65 ամպեր, մինչդեռ խնայաբեր խտությունը 0,3—0,35 ամպերն է: Այդ նկատառումով վերակառուցվում են էլեկտրոլիզի արտադրամասի երկրորդ բաժանմունքի վաննաները:

Ձեռնարկությունում մրցության և հատկապես խնայողության համար մղվող պայքարի առաջամարտիկներից են կոմունիստներ Պ. Նազարեթյանը (էլեկտրոլիզի արտադրամաս), Ռ. Քալաշյանը (ֆոլգագլանման արտադրամաս), Ա. Մանուկյանը (կոնդենսատորային ֆոլգայի արտադրամաս) և ուրիշներ: Ի դեպ, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, անոդավարների բրիգադավար Պ. Նազարեթյանը դեռ անցյալ տարի հանդես եկավ «Արտապլանային արտադրանքը միայն խնայված հումքի, նյութերի, էներգիայի հաշվին» նախաձեռնությամբ, որը լայն արձագանք գտավ գործարանի բոլոր արտադրամասերում: Եվ այժմ նա հումքի ու նյութերի տնտեսման իսկական օրինակ է տալիս:

Խնայողության ռեժիմի ուժեղացման նպատակով ձեռնարկության դիրեկցիան, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները համատեղ մշակել են խրախուսման հստակ սիստեմ: Նրանք հաստատել են ստուգատեսի անցկացման կանոնադրություն, ուր սահմանվել են ստուգատեսի խնդիրները, պայմանները, ցուցանիշները, խրախուսման միջոցները: Արդյունքների ամփոփման համար նախատեսվել են բալային սիստեմ և կարգ: Մրցության առաջին փուլում առաջին տեղը գրավեց կոնդենսատորային ֆոլգայի արտադրամասը, երկրորդը՝ էլեկտրոլիզի, երրորդը՝ ֆոլգագլանման արտադրամասը: Նրանք համապատասխանաբար պարգևատրվեցին 500, 300, 200 ռուբլով: Բացի այդ, մրցության առաջավորներին, ըստ կանոնադրության, տրվում է խնայված նյութերի արժեքի որոշակի տոկոսը:

Մասնակցելով մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին ծավալված սոցմրցությանը, ալյումինագործներն ընդունել են բարձր պարտավորություններ: Նրանք խոստացել են արտադրանքի իրացման տարեկան պլանը զգալիորեն գերակատարել, տնտեսել 6 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, ավելի



քան 200 հազար ռուբլու հումք և նյութեր, ռացիոնալիզատորական առաջարկությունների և գյուտերի ներդրումից ստանալ 550 հազար ռուբլու տարեկան պայմանական տնտեսում: Խնդիր է դրված՝ արտադրանքի ամբողջ հավելաճը ապահովել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Առաջին եռամսյակի արդյունքները ցույց են տալիս, որ ալյումինագործները կկատարեն իրենց խոստումը և հոբելյանական տարին կփակեն տեխնիկատնտեսական բարձր ցուցանիշներով:

Խնայողության ռեժիմն ամենից առաջ ուղղված է արտադրանքի նյութատարության իջեցմանը: Դա արվում է կոնստրուկտորական առաջադիմական լուծումների առավել լայն կիրառման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, հումքի ու նյութերի խնայողական տեսակների թողարկման ավելացման, երկրորդային ռեսուրսների օգտագործման ընդլայնման միջոցով: Մեքենաների դետալները կտրման մեթոդով մշակելիս՝ մետաղի զգալի մասը վերածվում է տաշեղի: Օրինակ, Հայկական ՍՍՀ-ում մեկ տարում տաշեղի է վերածվում 30 հազար տոննա մետաղ: Մինչդեռ դրոշմմամբ մշակման, պատրաստի մոդելներով դետալի ճշգրիտ ձուլման, մեքենաշինությանն անհրաժեշտ պրոֆիլի գլանվածքի թողարկումը կենտրոնացնելու միջոցով բավականին կնվազեն մնացուկները: Սրանք լուրջ խնդիրներ են, որոնց վրա կուսկազմակերպությունները պետք է հրավիրեն մրցողների ուշադրությունը:

Մեքենաների ու սարքավորումների մետաղատարության իջեցմամբ լրջորեն են զբաղվում ՀՍՍՀ էլեկտրատեխնիկական, հաստոցագործիքաշինական արդյունաբերության ձեռնարկությունները: «Հայէլեկտրաշարժիչ» միավորումը ներկայումս թողարկում է 4Ա մոդելի էլեկտրաշարժիչ, որի քաշը իջեցվել է 15 տոկոսով, ընդ որում, պահպանվել է նախկին հզորությունը: Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանում թողարկվող շառավղային-գայլիկոնող հաստոցի քաշը երկուսուկես տոննայից իջեցվել է երկու տոննայի, միաժամանակ էապես բարելավվել են դրանց շահագործողական հատկությունները: «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորումում մշակվել է տրանսֆորմատորների նոր սերիա, որոնց քաշը իջել է, որակական ցուցանիշները՝ բարելավվել: Դրանցում, ՏՄ սերիայի տրանսֆորմատորների համեմատությամբ, էլեկտրատեխնիկական պողպատի տնտեսումը կազմում է ավելի քան 15, կոնստրուկցիոն պողպատինը՝ 10 տոկոս: Միավորման գիտահետազոտական ինստիտուտը մշակել է նոր (ՕՍ) սերիայի մինչև 100 կվտ հզորությամբ սինխրոնային գեներատորներ, որոնց չափսերը և քաշը ավելի փոքր են (մինչև 25 տոկոս), օգտակար գործողության գործակիցը՝ բարձր, քան ներկայումս արտադրվող գեներատորներինը:

Ընթացիկ հնգամյակում արդյունաբերությունում ոչ նյութատար ճյուղերի արագատեմպ զարգացման, հումքի, նյութերի, վառելիքի, էլեկտրաէներգիայի ծախսման տեսակարար կշռի իջեցման շնորհիվ հանրապետության արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր ծավալում նյութական ծախսերը կկրճատվեն 2,7 տոկոսով:

Այսպիսով, արտադրության բոլոր օղակներում խնայողության համար մղվող պայքարի ծավալումը սոցիալիստական մրցության կարևոր խնդիրներից, տասներորդ հնգամյակի լարված առաջադրանքները կատարելու հիմնական ուղիներից է: «Արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշմամբ պահանջվում է. «Խստիվ պահպանել խնայողության, նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ռեժիմը՝ առաջադիմական կոնստրուկտորական լուծումները լայնորեն կիրառելու, տեխնոլոգիան կատարելագործելու, հումքի և նյութերի տեսակարար ծախսումները նվազեցնելու, դրանք է՛լ ավելի խոր ու կոմպլեքսային վերամշակման ենթարկելու, երկրորդային ռեսուրսների օգտագործումն ընդլայնելու հիման վրա»:

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## ԱԿԱՆԱՎՈՐ ՄԱՐՔՍԻՍՏ ՊԱՏՄԱԳԵՏԸ

(Ակադեմիկոս Ա. Գ. Հովհաննիսյանի ծննդյան 90-ամյակի առթիվ)



ԱԿԱԴԵՄԻԿՈՍ ԱՇՈՏ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆՆ անցել է կյանքի ուսանելի ուղի: Նա մեր այն գիտնականներից էր, որ գիտությանը զուգընթաց բոլորանվեր ծառայեց իր որդեգրած գաղափարների մեծ գործին: Նա կոմունիստ գիտնական էր: Գործունեության ասպարեզ իջնելով պատմական այն ժամանակաշրջանում, երբ Ռուսաստանում ծայրաստիճան սրված էին դասակարգային և ազգային հակամարտությունները, ծավալվող հեղափոխական լայն շարժումներին մասնակցող Ա. Հովհաննիսյանը մեկընդմիշտ կանգնեց պրոլետարիատի դասակարգային կռվի դիրքերում: Ճիշտ կողմնորոշվելով հասարակական-քաղաքական կյանքի բարդ իրադրության մեջ՝ Աշոտ Հովհաննիսյանն իր ժողովրդի ազգային փրկությունը տեսավ նրա սոցիալական ազատագրության մեջ: Նրա կյանքի ուղենիշը դարձավ Ռուսաստանի բոլոր ժողովուրդների աշխատավորական զանգվածների համատեղ պայքարը հանուն նոր, սոցիալիստական հասարակարգի:

Մեծ է Աշոտ Հովհաննիսյանի դերը հայ պատմագիտական մտքի զարգացման ասպարեզում: Իբրև պրոֆեսիոնալ պատմաբան՝ իր աշխատություններով նա դարձավ հայ մարքսիստական պատմագիտության հիմնադիրներից մեկը:

Աշոտ Գարեգինի Հովհաննիսյանը ծնվել է 1887 թվականի հունիսի 17-ին, լեռնային Ղարաբաղի Շուշի քաղաքում, քահանայի ընտանիքում: Իր նախնական կրթությունն ստացել է Շուշիի ռեալական ուսումնարանում, որն ավարտել է 1906 թվականին: Ռեալական ուսումնարանում սովորելու տարիներին Ա. Հովհաննիսյանն ընդգրկվեց սոցիալ-դեմոկրատական շարժման մեջ, ծանոթացավ մարքսիստական գրականությանը: 1906 թվականին նա ընդունվեց Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության շարքերը, հարելով ՌՍԴԲԿ բոլշևիկյան թևին: Նույն թվականին Ա. Հովհաննիսյանը մեկնում է Գերմանիա՝ բարձրագույն կրթություն ստանալու: Տարբեր տարիների նա ուսանում է Ենայի, Հալլեի և Մյունխենի համալսարաններում, ուսումնասիրում փիլիսոփայություն, պատմություն, տնտեսագիտություն, ինչպես նաև՝ գերմաներեն, ֆրանսերեն և լատիներեն: Ուսումնառությանը զուգընթաց Ա. Հովհաննիսյանը մասնակցում է ռուսական սոցիալ-դեմոկրատական արտասահմանյան կազմակերպության աշխատանքներին:

Գերմանիայում ուսանելու տարիներին կանխանշվում է նրա գիտական հետաքրքրությունների շրջանակը՝ հայ ազգային-ազատագրական շարժումների պատմության ուսումնասիրությունը: Այդ կարևոր պրոբլեմի բացահայտմանն էլ նվիրված էր նրա՝ 1913 թվականին Մյունխենում հրատարակված Իսրայել Օրին և հայ ազատագրական գաղափարը աշխատությունը, որի համար նրան շնորհվում է փիլիսոփայության դոկտորի աստիճան: Այդպես է սկսվում Ա. Հովհաննիսյանի գիտական բեղմնավոր գործունեությունը:

Հայրենիք վերադառնալուց հետո նա զբաղվում է ուսուցչական, գիտական և հեղափոխական գործունեությամբ: Մեկ տարի Շուշիի հայկական հոգևոր սեմինարիայում ընդհանուր պատմություն և գերմաներեն դասավանդելուց հետո, 1914 թվականին, նա տեղափոխվում է Վաղարշապատ և դասավանդում Էջմիածնի Գևորգյան ճեմարանում: Լայն հնարավորություններ են ընձեռվում պրպտումներ կատարելու մատենադարանում, շարունակելու իր գիտական աշխատանքները: 1914—1916 թվականներին «Արարատ» ամսագրում և առանձին գրքույկներով լույս են տեսնում նրա հայագիտական մի շարք հետազոտությունները, որոնք հետագայում դառնալու էին նրա Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության երկհատոր հիմնարար աշխատության պատվանդանը:

Դասախոսական և գիտական գործունեությանը զուգընթաց Աշոտ Հովհաննիսյանն ընդհատակյա հեղափոխական աշխատանք է տանում ճեմարանի ուսանողության շրջանում: Մեծ է նրա վաստակը Ա. Միկոյանի, Ս. Դանիելյանի, Ա. Շահգելդյանի, Ե. Մկրտումյանի և շատ ուրիշների հեղափոխական-մարքսիստական պատրաստության, բոլշևիկյան ոգով նրանց դաստիարակության գործում:

1917 թվականի փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխության և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության աշխարհացունց օրերին Աշոտ Հովհաննիսյանը հեղափոխական եռանդուն գործունեություն է ծավալում: 1917 թ. Շուշիում նա հրատարակում է բոլշևիկյան «Նեցուկ» լրագիրը, հանդես գալիս գրավոր ու բանավոր հրապարակախոսությամբ՝ մեծապես նպաստելով լենինյան գաղափարների տարածմանը: Անցնելով Բաքու, կոմունայի օրերին նա գլխավորում է Բաքվի սովետի կուլտուր-լուսավորական բաժինը, իսկ հետո՝ Բաքվի կոմունայի լուսավորության կոմիսարիատի դպրոցական բաժինը, շարունակելով հրապարակախոսական գործունեությունը:

Բաքվի կոմունայի անկումից հետո Աշոտ Հովհաննիսյանին հաջողվում է անցնել Աստրախան և ապա Մոսկվա, որտեղ Ազգությունների գործերի ժողովրդական կոմիսարիատի հայկական գործերի կոմիսարիատում ղեկավարում է գրական-հրատարակչական բաժինը, որից հետո նաև ՌՍՖՍՀ լուսավորության ժողովրդական կոմիսարիատի հայկական բաժինը, միաժամանակ հայոց պատմություն ավանդելով Լազարյան ճեմարանում:

Հայ ժողովրդի համար այդ ծանր օրերին, երբ ազգայնական անհաշտության ոգին էր տիրում Անդրկովկասում, իսկ դաշնակցականների տիրապետության ներքո գտնվող Հայաստանը թուրքական հայաջինջ արշավանքի անմիջական սպառնալիքի տակ էր, Աշոտ Հովհաննիսյանը խորապես ըմբռնեց, որ իր ժողովրդի փրկության միակ ելքը սովետական կարգերի հաստատումն է, Սովետական Ռուսաստանի հետ ունեցած սերտ դաշինքը: Այդ նպատակով 1920 թ. հոկտեմբերին Բ. Լեգրանի գլխավորած ՌՍՖՍՀ դիվանագիտական միսիայի կազմում նա ժամանեց Հայաստան:

1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանը հռչակվեց Սովետական Սոցիալիստական Հանրապետություն: Սովետական կարգերի հաստատման առաջին իսկ օրից Աշոտ Հովհաննիսյանը դրսևորում է եռանդուն գործունեություն, դառնալով Սովետական Հայաստանի լուսավորության առաջին ժողովրդական կոմիսարը: 1922 թվականին, Հայաստանի կոմունիստական կուսակցության առաջին համագումարից հետո, Աշոտ Հովհաննիսյանն ընտրվում է Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար, մի պաշտոն, որը նա զբաղեցնում է մինչև 1927 թվականը: Աշոտ Հովհաննիսյանը Ալ. Մյասնիկյանի, Ս. Լուկաշինի, Ս. Կասյանի, Ա. Մռավյանի հետ համատեղ, եռանդուն մասնակցում է պատերազմի հետևանքով ավերված ու քարուքանդ եղած հայրենի երկրի ժողովրդական տնտեսության վերականգնմանը, սոցիալիստական մշակույթի գոյավորմանն ու զարգացմանը: Պետական-կուսակցական գործունեությանը զուգահեռ Աշոտ Հովհաննիսյանը Երևանի համալսարանում ավանդում էր լենինիզմ և հայ ժողովրդի պատմություն, խմբագրում «Նորք» հանդեսը, հանրապետության պարբերական մամուլի էջերում պրոպագանդում լենինյան գաղափարները՝ անհաշտ պայքար մղելով գաղափարական հակառակորդների դեմ:

1928 թվականին Աշոտ Հովհաննիսյանը տեղափոխվում է Մոսկվա, որտեղ երկու տարի գլխավորում է Մարքսի և Էնգելսի ինստիտուտի միջազգային հարաբերությունների պատմության կաբինետի աշխատանքները: 1929—1934 թթ. ՍՍՀՄ ազգությունների ինստիտուտում պրոֆեսոր Աշոտ Հովհաննիսյանի դասախոսությունների նյութը Արևելքի ժողովուրդների ազ-

գային-հեղափոխական շարժումներն էին: 1934 թվականին նա ընտրվում է Նյութական կուլտուրայի պատմության պետական ակադեմիայի իսկական անդամ և մինչև 1937 թվականը վարում է նույն ակադեմիայի Մոսկվայի բաժանմունքի դիրեկտորի պաշտոնը: Իսկ 1936—1937 թթ՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի պատմության ինստիտուտի դիրեկտորի տեղակալն էր նա: Այդ պաշտոնում էլ ժամանակավորապես ընդհատվում է կուսակցական-պետական գործչի և գիտնականի բեղուն գործունեությունը:

1954 թվականին Աշոտ Հովհաննիսյանն աշխատանքի է անցնում ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտում, որպես ավագ գիտական աշխատող և 1955 թվականին պաշտպանում է դոկտորական դիսերտացիա: 1960 թվականին նա ընտրվում է ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի իսկական անդամ, իսկ 1961 թվականից մինչև իր մահը, 1972 թվականը, վարում էր պատմության ինստիտուտի նոր պատմության բաժինը: Այդ տարիներին, չնայած իր պատկառելի տարիքին, նա մեծ եռանդով ձեռնամուխ է լինում գիտական և գիտակազմակերպական աշխատանքների: Նրա ակտիվ մասնակցությամբ ու ղեկավարությամբ սկսվեց Հայ ժողովրդի պատմության ութհատորանոց ակադեմիական հրատարակությունը: Նրա ղեկավարությամբ շատ ասպիրանտներ պատրաստեցին դիսերտացիաներ և մտան գիտական գործունեության ասպարեզ: 1967 թվականին, ծննդյան ութսունամյակի կապակցությամբ, հասարակական-քաղաքական և գիտական բեղմնավոր գործունեության համար ակադեմիկոս Աշոտ Հովհաննիսյանը պարգևատրվեց Լենինի շքանշանով:

1972 թվականի հունիսի 30-ին ընդհատվեց նրա բազմաբեղուն կյանքի թելը:

Աշոտ Հովհաննիսյանը լայն մտահորիզոնի տեր գիտնական էր, ընդարձակ էին նրա գիտական հետաքրքրությունների շրջանակները: Հայաստանի սոցիալ-տնտեսական, հասարակական-քաղաքական կյանքի հարցերը (սկսած խոր միջնադարից մինչև իր ապրած օրերը) համակողմանի լուսաբանվել են նրա աշխատություններում: Ընդ որում, նա Հայաստանի պատմության հարցերը վերլուծում է դրան առնչված երկրների ու պետությունների պատմության լայն հետնախորքի վրա:

Հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի, հայ ազատագրական մտքի պատմության գիտական իմաստավորմանն ու լուսաբանմանն է նվիրված նրա Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության երկհատոր պատմա-փիլիսոփայական աշխատությունը, ուր գիտական խորությամբ վերլուծված է միջնադարյան տեսիլներով ու լեգենդներով շղարշված հայկական ազատագրական միտքը: Վերցնելով զարգացման մոտ հազար տարիների պատմական մի վիթխարի ժամանակահատված՝ Աշոտ Հովհաննիսյանը մեկնաբանում է հայ ժողովրդի սոցիալական և քաղաքական ընթացքի ողջ դիալեկտիկան, շեշտելով պատմական տարբեր ու տարատեսակ ժամանակաշրջանների փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը: Հենց այս պարագան էլ հնարավորություն է ընձեռել պատմագետին՝ լուսաբանելու հայ ազատագրական շարժման գաղափարական-քաղաքական բախումները, հայրենի երկրի զանազան դասակարգերի ու խմբավորումների, հոսանքների ու գործիչների դերը սոցիալական ու ազգային ազատագրական մաքառումներում:

Հիրավի, Աշոտ Հովհաննիսյանի Դրվագները կարևոր են, հատկապես, հայ ազգային-ազատագրական շարժման ռուսական կողմնորոշման սկզբնավորման, այդ կողմնորոշման սոցիալ-քաղաքական էության բացահայտման և լուսաբանման առումով: Հետազոտելով պատմական նախորդ զարգացման ընթացքը մինչև XVIII դար, նա ցույց է տալիս, թե ինչպես XVIII դարի 20-ական թվականներին հայ ազգային-ազատագրական շարժման ռուսական կողմնորոշումը, Արևելյան Հայաստանում բռնկած ազգային-ազատագրական հուժկու շարժման վերելքի պայմաններում, ստացավ իրոք համաժողովրդական բնույթ՝ դառնալով տիրապետող մտայնություն: Այդ առումով Աշոտ Հովհաննիսյանն ըստ արժանվույն գնահատել է հայ ազատագրական շարժման ռահվիրաներից Իսրայել Օրու գործունեությունը, նրա դերը ռուսական կողմնորոշման գաղափարական ու քաղաքական հիմնավորման խնդրում:

Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության աշխատության գիտական արժեքը մեծապես բարձրացնում է նաև այն հանգամանքը, որ հեղինակն առաջինն է գիտական շրջանառության մեջ դրել բազմաթիվ նոր նյութեր, որոնք և հնարավորություն են ընձեռել նրան՝ հիմնավոր պատասխան տալու շատ բարդ հարցերի, լուսաբանելու ինչպես միջնադարյան Հայաստանի, այնպես էլ դրացի երկրների պատմությանը վերաբերող պրոբլեմները: Օգտագործված փաստական հարուստ նյութը ո՛չ միայն վկայությունն է հեղինակի տարիների տքնաջան աշխատանքի, այլև գիտական բարեխղճության ու պատասխանատվության ուսանելի դաս է:

Հայ ազգային-ազատագրական շարժման ռուսական կողմնորոշման հարցի ուսումնասիրության, գիտական հիմնավորման տեսակետից խիստ այժմեական են Աշոտ Հովհաննիսյանի խմբագրությամբ և ընդարձակ ներածականով



ռուսաց լեզվով հրատարակված Հայ-ռուսական հարաբերությունները 18-րդ դարի առաջին երեսնամյակին փաստաթղթերի ժողովածուն (Երևան, 1964—1967): Վերլուծելով XVII դարի վերջին, XVIII դարի սկզբին ծայր առած հայ ազգային-ազատագրական շարժումները, դրանց շարժիչ ուժերն ու դրդապատճառները՝ Աշոտ Հովհաննիսյանը, միաժամանակ, բացահայտում է այն պայմաններն ու իրադարձությունները, որոնք և, վերջին հաշվով, պայմանավորեցին ռուսական կողմնորոշման գաղափարի տիրապետումը ժողովրդական զանգվածների շրջանում և համաժողովրդական բնույթ հաղորդեցին ազգային-ազատագրական շարժմանը:

Աշոտ Հովհաննիսյանի գիտական ժառանգության մեջ ուրույն տեղ է գրավում հայ մեծ հեղափոխական Միքայել Նալբանդյանի կյանքի ու գործունեության ամբողջական արժեքավորմանը նվիրված՝ Նալբանդյանը և նրա ժամանակը երկհատորանոց պատմակենսագրական մենագրությունը: Վերլուծելու և արժեքավորելու համար այնպիսի մի անձնավորության գործունեությունը, ինչպիսին է բանաստեղծ, հրապարակախոս, փիլիսոփա, տնտեսագետ Մ. Նալբանդյանը, բնականաբար, հետազոտողը պետք է ունենար տեսական մեծ պատրաստականություն, գիտելիքների հարուստ պաշար, խորիմացություն: Աշոտ Հովհաննիսյանը հիշյալ աշխատության մեջ լավագույնս է լուծել իր առջև ծառացած հարցերը: Այս դեպքում նրան օգնել է փիլիսոփայական և բանասիրական պատրաստությունը, քաջատեղյակությունը եվրոպական ու ռուսական հասարակական-քաղաքական ու հեղափոխական շարժումներին, լավատեղյակությունը ժամանակի հայկական իրականությանը հուզող խնդիրներին: Նա համոզիչ ցույց է տալիս, թե ինչպես է մշակվել Մ. Նալբանդյանի հեղափոխական-դեմոկրատական աշխարհայացքը, բացահայտում Մ. Նալբանդյանի և նրա կուսակիցների կապը ռուս մեծ հեղափոխական-դեմոկրատներ Գերցենի, Օգարյովի, Չերնիշևսկու հետ:

Աշոտ Հովհաննիսյանը հմտորեն ներկայացնում է Նալբանդյանի աշխարհայացքի հեղափոխական-դեմոկրատական հեղաբեկման ընթացքը 1859—1861 թթ., Ռուսաստանում ստեղծված հեղափոխական իրադրության պայմաններում: Նա շեշտել է, որ Մ. Նալբանդյանը հաղթահարեց ազգային ինքնապարփակվածությունը և դուրս եկավ համառուսաստանյան և համաեվրոպական գործունեության ասպարեզ: Չէ՛ որ նա ձգտում էր հայկական դեմոկրատիայի ազատագրական մղումները շաղկապել ռուսական գյուղացիական հեղափոխությանը և եվրոպական մի շարք երկրներում ծավալված ազգային-ազատագրական շարժումներին: Դրան զուգընթաց Նալբանդյանը նաև այն գործիչն էր, որ, առաջադրելով համընդհանուր նպատակներ ու խնդիրներ, շաղկապեց արևելահայ և արևմտահայ դեմոկրատիան, ջանալով միասնական հունով տանել հայ ժողովրդի այդ երկու տարանջատված հատվածների ազատագրական պայքարը:

Նալբանդյանը և նրա ժամանակը աշխատության մեջ Աշոտ Հովհաննիսյանը վարպետորեն տարբերակեց անցյալ դարի 50—60-ական թվականների հայ իրականության հասարակական-քաղաքական հոսանքները, նշմարեց դրանց հետագա էվոլյուցիան, որի հետևանքով և 70—80-ական թվականներին տեղի ունեցան հետագա վերախմբավորումներ: Այս առումով հետաքրքրական է Աշոտ Հովհաննիսյանի Ուրվագծեր XIX դարի երկրորդ կեսի արևելահայ հասարակական հոսանքների և ազգային քաղաքական կուսակցությունների պատմության անտիպ աշխատությունը, որի մի շարք դրույթներ հրապարակվել են որպես հոդվածներ (Արծրունու և Րաֆֆու գաղափարական ներհակության ակունքը, Արևելահայերի մասնակցությունը Ռուսաստանի և Անդրկովկասի հեղափոխական շարժումներին (1860—70-ական թվականներ), Հնչակյանների կազմավորման գաղափարական արմատները, 80-ական թվականների առաջին կեսի արևելահայ նարոդնիկական խմբակները և այլն:

Հեղափոխական նարոդնիկությունը՝ գյուղացիական սոցիալիզմի իր գաղափարախոսությամբ, համադեմոկրատական կարգեր հաստատելու, գաղութային ծայրերկրներին հուզող ազգային-ազատագրական խնդիրները համառուսաստանյան դեմոկրատիայի հեղափոխական խնդիրներին միաձուլելու իր ձգտմամբ լայն արձագանք էր գտնում տարազգի ուսանող երիտասարդության շրջանում՝ ներգրավելով նրան նարոդնիկական ընդհանուր շարժման հունը:

Աշոտ Հովհաննիսյանը ցույց է տալիս, թե ինչպես հեղափոխական նարոդնիկության վերասերումը լիբերալ նարոդնիկության, վերջինիս կողմից ազգերի ինքնորոշման իրավունքի, ազգային հարցի անտեսումը, այն էլ անցյալ դարի 80-ական թվականներին ծավալված ռեակցիայի պայմաններում, նարոդնիկությունից հեռացրեց ոչ ռուս ազգությունների ներկայացուցիչներին, ինչպես և հայ նարոդնիկներին: 80-ական թվականներին հայ նարոդնիկությունն սկսում է կղզիանալ, կտրվել համառուսաստանյան հեղափոխական շարժումից և տարրալուծվել ազգային-նարոդնիկական կազմակերպությունների մեջ, իր հետաքրքրությունների կիզակետում պահելով գրեթե միայն Արևմտյան Հայաստանի ազգային ազատագրության հարցը: Աշոտ Հովհաննիսյանը մատնանշում է, որ հայ

նարոդնիկության ազգային կղզիացման գործում կարևոր դեր են խաղացել նաև արտաքին-քաղաքական այնպիսի նշանակալից ազդակներ, ինչպես Սան-Ստեֆանոյի պայմանագրում և Բեռլինի կոնգրեսում հայկական հարցի արծարծումը՝ որպես հետևանք 1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմում Ռուսաստանի տարած հաղթանակի: Սրանք հույժ կարևոր գիտական հարցեր են, որոնք մեծապես օգնում են՝ ըմբռնելու հայ քաղաքական կուսակցությունների հետագայում որդեգրած ընթացքը:

Իհարկե, թվարկված խոշոր մենագրություններով չի սպառվում Աշոտ Հովհաննիսյանի գիտական վաստակը: Նրա գրչին են պատկանում նաև բազմաթիվ համեմատաբար փոքրածավալ հետազոտություններ ու հոդվածներ, որոնք վերաբերում են հայ ժողովրդի պատմության ամենատարբեր դարաշրջանների կարևոր, լուսաբանության կարոտ առանձին հարցերի: Դրանց, ինչպես և Աշոտ Հովհաննիսյանի ողջ գիտական ժառանգության համար բնորոշը նրա հետազոտողի ձիրքն է, փաստերի ներքին կապակցության հայտաբերումը և գնահատումը, որը բխում է պատմական օրինաչափությունների խորիմացությունից:

Անշուշտ, լրիվ չի լինի մեր պատկերացումը Աշոտ Հովհաննիսյանի մասին, եթե չհիշատակենք այն ստեղծագործությունները, որոնք ձոնել են նրա հեղափոխական գործունեության արգասիքը, որոնց մեջ նա բացահայտել է իր կյանքի ու պայքարի հավատամքը: Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո Աշոտ Հովհաննիսյանն առաջիններից մեկն էր այն հայ մարքսիստ պատմաբաններից, ովքեր անհաշտ պայքար ծավալեցին դաշնակցության գաղափարախոսության դեմ: Աշոտ Հովհաննիսյանի Դաշնակցությունը և պատե[illegible] Դաշնակցական գաղափարախոսության ընթացիկ կուրսը, Դաշնակցության սոցիալական ծագումը, Դաշնակցության առիթով գրքույկները մերկացնում են դաշնակցության հակահեղափոխական և հակասովետական էությունը, նրա գործունեության արատավոր մեթոդները և ցույց տալիս դրանց ակունքները: Այս առումով Աշոտ Հովհաննիսյանի այդ բնույթի գործերն իրենց արժանի տեղն ունեն սովետահայ հասարակական-քաղաքական մտքի պատմության մեջ: .

Քաջ գիտակցելով սովետական կարգերի հաստատման բախտորոշ նշանակությունը հայ ժողովրդի ճակատագրում, նրա ազգային վերածնության գործում, դեռևս 20-ական թվականներին Աշոտ Հովհաննիսյանը ձեռնամուխ եղավ այդ նշանավոր իրադարձության պատմության վերլուծությանն ու գիտական շարադրանքին: Այդ թեմայով նա գրեց Համազգային կրիզիսը և Հայաստանի հեղափոխության հուլիսն ու հոկտեմբերը աշխատությունները, վերլուծելով Հայաստանում սովետական կարգերի հաստատման նախապայմանները և Մայիսյան ապստամբությունը: Աշոտ Հովհաննիսյանն այստեղ կարևոր ընդհանրացումներ է կատարում, անդրադառնում սովետական իշխանության համար Հայաստանում ծավալված պայքարի կարևորագույն փուլերին, այդ պայքարի օրինաչափություններին:

Կոմունիստական կուսակցության անձնվեր գործիչ և ականավոր մարքսիստ-պատմագետ Աշոտ Հովհաննիսյանի վաստակն ու մատուցած ծառայությունները որքան անտարակուսելի, նույնքան և օգտակար ավանդ են նոր կյանքի կառուցման գործում:

Վ. Ա. ԴԻԼՈՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր






Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

ՎՖ 04355 Պատվեր 1597 Թղթի չափսը $70 \times 108^1/_{16}$: Տիրաժ 14.700 Գինը՝ 20 կոպ.:
Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 30/VII 1977 թ.:
ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խաչակյան փող. № 28:

СОДЕРЖАНИЕ

Постановление Верховного Совета СССР об избрании товарища Брежнева Л. И. Председателем Президиума Верховного Совета СССР . . . . . . . 2
Шестая сессия Верховного Совета СССР девятого созыва
Выступление товарища М. А. Суслова . . . . 3
Выступление товарища Л. И. Брежнева . . . . 5
В Политбюро ЦК КПСС, Президиуме Верховного Совета СССР, Совете Министров СССР
Об итогах визита Генерального секретаря ЦК КПСС, Председателя Президиума Верховного Совета СССР Л. И. Брежнева во Францию . . . . . 6
Передовая — Конституция советского народа . . . 8

К 60-ЛЕТИЮ ВЕЛИКОГО ОКТЯБРЯ

М. П. Мчедлов — Коммунистическое мировоззрение и воспитание нового человека . . . . . . . 14
Г. А. Айрян — Действенная сила киноискусства . . 24
Т. С. Минасянц — По пути усовершенствования . . 30
Ш. Санакоев — Великая революционно-преобразующая сила 37

ОБСУЖДАЕМ ПРОЕКТ КОНСТИТУЦИИ СССР

М. А. Меликян — Единство общества и личности. А. З. Тароян — Подлинная демократия. А. В. Акопян — Во имя мира. М. М. Даллакян — Все для здоровья человека 49

МЕЖДУНАРОДНОЕ КОММУНИСТИЧЕСКОЕ И РАБОЧЕЕ ДВИЖЕНИЕ

К. С. Зурабян — Коммунистическое и рабочее движение на современном этапе . . . . . . . 60

НА ПЕРЕКРЕСТКАХ ИСТОРИИ

Дж. С. Киракосян — Русская ориентация армян и западноевропейская дипломатия . . . . . 68

ВОПРОСЫ ЭКОНОМИКИ

Ц. Ц. Магтесян — К вопросу эффективности общественного производства . . . . . . 80
Л. З. Ананян — Соревнование и экономия . . . 86

ЗНАМЕНАТЕЛЬНЫЕ ДАТЫ

В. А. Дилоян — Выдающийся марксист-историк . . 92

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՋՈՒՐ ՓԱՅՏԻ ՀԱՄԱՐ

*Դժվար է դարեր շարունակ պահպանել ճարտարապետական նմուշները, հազվագյուտ փայտյա քանդակները: Հայկական ՍՍՀ շինանյութերի ու կառուցվածքների գիտահետազոտական ինստիտուտի աշխատակից Գ. Արզումանյանը մշակել է փայտը փտումից պաշտպանող մի պատրաստուկ: Արզումանյանի սուսպենզիան բաղկացած է ֆտորական նատրիումից (10—20 տոկոս), պոլիվինիլացետատային էմուլսիայից (3—8 տոկոս) և ջրից: Փայտին քսված լուծույթը ներծծվում է 2—3 մմ խորությամբ, չորանալուց հետո առաջացնում է հականեխիչ մի շերտ, որն ամրացնում է փայտը և պաշտպանում քայքայումից:*

## ԷՆԵՐԳԻԱ՝ ԱՂԲԻՑ

*ԳԴՀ-ի մայրաքաղաքում կառուցված աղբայրիչ նոր գործարանը տալիս է ո՛չ միայն էլեկտրական էներգիա, այլև գոլորշի՝ ջեռուցման նպատակով, հատիկավորված մոխիր՝ շինարարության համար, երկաթյալոմ՝ մագնիսից: Դրա սխեման մշակվել է Դրեզդենի կոմունալ տնտեսության ինստիտուտում, չեխ մասնագետների օգնությամբ: Նրանք նախագծել են գոլորշու հատուկ կաթսաներ և էլեկտրաթորիչներ՝ 160 մետրանոց խողովակների համար: Ամեն օր գործարանն ստանում է 5.200 մ3 քաղաքային թափոն: Քարածխին համազոր կալորիականություն ստանալու նպատակով աղբը մանրացնելուց ու չորացնելուց հետո ավելացվում է փոքր քանակությամբ ավտոմեքենայի օգտագործված յուղ:*

## ԱՄՐՈՒԹՅԱՆ ՔՆՆՈՒԹՅՈՒՆ

*ՍՍՀՄ պետշինի՝ Քիշինյովի հիմքերի և ստորգետնյա կառույցների գիտահետազոտական ինստիտուտի սեյսմափորձարանի մի խումբ գիտնականներ ու ինժեներներ ստեղծել են մի սարքավորում, որով կարելի է որոշել բարձրահարկ շենքերի, ծանրաքարշ մեքենաների, հսկա տուրբինների հողե հիմքերի դիմացկունությունը երկրաշարժի ժամանակ: Դրա միջոցով հնարավոր է սահմանել նաև երկաթուղիների և ավտոճանապարհների սեյսմադիմացկունությունը:*

*Օգտվելով սարքի կանխագուշակումներից՝ շինարարներն սկսել են կառուցել բարձրահարկ շենքեր՝ թեթև հիմքերով:*

## ՏՐԱՆՍՊՈՐՏԸ ՉԱՐԳԵԼԱԿԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*Հաճախ հարկ է լինում խճուղով շտապ անցկացնել էլեկտրական կամ հեռախոսային կաբել, և շինարարներն ստիպված արգելափակում են խճուղին, քանդում ասֆալտը, փորում փոսեր:*

*«ББА» շվեդական ֆիրման թողարկել է «Պիոներ» շարժական փորիչ սարքը— բենզինով բանող միագլան շարժիչ՝ 200 խ. մ. աշխատածավալով: «Պիոները» տեղադրվում է նախօրոք պատրաստված այնպիսի հրապարակում, ուր այն կարողանա ազատ շարժվել: Հորատադուրն ունի 1,3 մ երկարություն և 5 սմ տրամագիծ: Երբ ավարտվում է աշխատանքի առաջին փուլը, հորատադուրին կցվում է լրացուցիչ ձող, որով շարունակվում է հորատումը: Փորվածքի առավելագույն երկարությունը 10 մետր է:*

## ՆՈՐ ՄԱԳՆԻՏՈՖՈՆ

*Արզամասի ՍՍՀՄ 50-ամյակի անվան գործարանը յուրացրեց «Լեգենդա—404» նոր մագնիտոֆոն: Այն ունի երկու արագություն՝ վայրկյանում 4,76 և 2,38 սանտիմետր, որը հնարավորություն է ընձեռում մագնիտոֆոնն օգտագործելու նաև որպես դիկտոֆոն: Գրանցման ավտոմատ կառավարման շնորհիվ ինդիկատորի վերահսկման կարիք չի լինում:*

*Մագնիտոֆոնում եղած ռադիոտուփը հնարավորություն է ընձեռում այն օգտագործելու նաև որպես շարժական ռադիոընդունիչ:*